ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ • 1975

digitised by A.R.A.R.@

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ՍՈՎԵՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԸՆԴԴԵՄ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ



### ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



### ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ




digitised by A.R.A.R.@

## СОДЕРЖАНИЕ

### Статьи



### Партийная жизнь



### Советское строительство



### Вопросы экономики



### Против буржуазной идеологии



### Трибуна научного работника



### Наука и жизнь




8548-սմ





# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է


**Ե. Թ. ԱՍԾԱՏՐՅԱՆ**

*Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ*


ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ՆՐԱ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ գլխավորում են սովետական հասարակության վերընթացը դեպի կոմունիզմ, հետևողականորեն կատարելագործում տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարումը, կազմակերպական ու քաղաքական աշխատանքի ձևերն ու մեթոդները, զարգացնում կատարման նկատմամբ վերահսկողության և ստուգման միջոցները։

Այժմ, երբ մեր երկրի ժողովրդական տնտեսությունը դարձել է անչափ բարդ ու բազմակողմանի, իսկ ժողովրդի, կուսակցության և պետության ստեղծարար գործունեության մասշտաբները հասել են վիթխարի չափերի, բացառիկ կարևոր նշանակություն են ստանում կատարման վերահսկողությունն ու ստուգումը՝ սոցիալիստական շինարարության ղեկավարման այդ կարևորագույն սկզբունքը։

Սիստեմատիկ և արդյունավետ վերահսկողությունն օգնում է պահպանել տնտեսական աշխատանքի գործարար ռիթմը, կանխել հնարավոր վրիպումներն ու թերությունները, կադրերին դաստիարակել հանձնարարված գործի հանդեպ բարձր պատասխանատվության, կազմակերպված կատարողական կարգապահության ոգով։

Թե կոմունիստական կուսակցությունը ինչպիսի հսկայական նշանակություն է տալիս ներգործուն, մասսայական վերահսկողության կազմակերպմանն ու կարգապահության բարձրացմանը կուսակցական, սովետական և տնտեսական ապարատի բոլոր օղակներում, հաստատում են ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումը և պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ելույթում առաջ քաշված դրույթները։

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս կատարման վերահսկողու-




digitised by A.R.A.R.@

թյանն ու ստուգմանը պետական և վարչա-կառավարչական ապարատի աշխատանքում, այդ ապարատի էժանացմանն ու կատարելագործմանը։ Նա հետևողականորեն պահանջում էր, որ վերահսկողության մարմինները վճռականորեն կանխեն կուսակցական և պետական կարգապահության խախտումները, բյուրոկրատիզմի և քաշքշուկի փաստերը, կյանքի, պրակտիկայի առաջադրած հարցերը հստակորեն և օպերատիվ լուծել չկարողանալու և չցանկանալու դեպքերը։ «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստացի կատարումը.— սովորեցնում էր Վ. Ի. Լենինը,— ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միմիայն ա՛յս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը» (Երկեր, հ. 33, էջ 265)։

Անցած տարիներին Սովետական Միությունը հասել է էկոնոմիկայի աննախադեպ վերելքի, գիտության ու տեխնիկայի զարգացման բարձր տեմպերի, աշխատունակ բնակչության զբաղվածության և ժողովրդական բարեկեցության բարձրացման։ Մեր ժողովրդական տնտեսության զարգացման պլանաչափությունը հնարավորություն է ընձեռում ճիշտ ու արդյունավետ կառավարել էկոնոմիկան համապետական մասշտաբներով, ռացիոնալ կերպով տեղաբաշխել արտադրաուժերը, տնտեսել նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները։

Որոշելով իններորդ հնգամյակի հիմնական խնդիրները կառավարման մեթոդների կատարելագործման բնագավառում՝ ՍՄԿԿ XXIV համագումարը շեշտեց, որ անհրաժեշտ է ամեն կերպ ամրապնդել պետական կարգապահությունը ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում, խստորեն պահպանել սոցիալիստական օրինականությունը տնտեսական հարաբերություններում։

Մեր կադրերի բարձր կազմակերպվածությունն ու կարգապահությունը, բոլոր աշխատավորների եռանդն ու նախաձեռնությունը հնգամյակի համար մղվող պայքարում վառ կերպով դրսևորվում են տնտեսական գործունեության բեղմնավոր արդյունքների մեջ։ Իններորդ հնգամյակի անցած չորս տարիներին արդյունաբերական արտադրանքի թողարկումը մեր հանրապետությունում մեծացել է 33 տոկոսով, մոտ կես միլիոն աշխատավորներ ստացել են նոր բարեկարգ բնակարաններ կամ բարելավել են իրենց բնակարանային պայմանները։ Կառուցվել և շահագործման են հանձնվել զգալի թվով հիվանդանոցներ, մանկապարտեզներ, դպրոցներ և կուլտուրական ու կոմունալ-կենցաղային այլ օբյեկտներ։ Մեծ աշխատանք է տարվել մասսայական պահանջարկ ունեցող և առօրյա օգտագործման ապրանքների բնագավառում բնակչության հարաճուն պահանջմունքները բավարարելու համար։

Պետական շահերի անշեղ պահպանման օրինակ կարող է ծառայել հանրապետության առաջավոր ձեռնարկությունների ղեկավարման պրակտիկան։ Դրանք պատվով են ավարտում հնգամյակի հինգերորդ տարին։ Շատ տնտեսություններ ու շրջաններ անցյալ տարի զգալիորեն գերակատարեցին պետության գյուղատնտեսական մթերքներ հանձնելու և վաճառելու պլանները։

Մեր բոլոր հաջողություններում, կոմունիստական կուսակցության նշած պլանների կատարման գործում գլխավոր դերը պատկանում է աշխատավորներին։ Աշխատավորների դեպուտատների սովետների նստաշրջաններում, կուսակցական, արհմիութենական և կոլեկտիվների ընդհանուր ժողովներում, ժողովրդական վերահսկողության մարմինների, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության միջոցով նրանք հանդես են գալիս հասարակական կյանքի զանազան



հարցերի վերաբերյալ առաջարկություններով, քննարկում են օրինագծերը, քննադատում թերություններն ու սխալները, պայքարում օրինականության խախտումների և անկազմակերպվածության դեմ։

Կատարման ստուգմանը մասնակից դարձնելով հազարավոր աշխատավորների՝ ժողովրդական վերահսկողության մարմինները ավելի լրիվ են իրականացնում դաստիարակության յուրատեսակ դպրոցի իրենց ֆունկցիաները։ Նրանք օգնում են կուսկազմակերպություններին՝ գործնականում սովետական մարդկանց համակել ամբողջ հասարակության գործի հանդեպ պատասխանատվության զգացումով, նրանց դաստիարակել բարձր կազմակերպվածության և կարգապահության ոգով։

ՍՄԿԿ XXIV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թ. դեկտեմբերյան պլենումի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումի որոշումներում առաջադրված խնդիրների հաջող լուծումը հրամայաբար պահանջում է արմատապես կատարելագործել պետական ապարատի գործունեության ոճն ու մեթոդները, բարձրացնել կառավարման բոլոր օղակների աշխատողների պատասխանատվությունը՝ իրենց վրա դրված պարտականությունները հստակ ու ժամանակին կատարելու համար։

Կատարված մեծ աշխատանքի հետ միասին, վերջին տարիներին, ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ, գործունեության շատ ոլորտներում իջել է կուսակցական և պետական կարգապահության մակարդակը, թուլացել պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, որոնց մի մասը սկսել էր անպատիժ կերպով չկատարել իր անմիջական պարտականությունները, անպատասխանատվություն ցուցաբերել դիրեկտիվ մարմինների որոշումների կատարման գործում։ Որոշ տեղերում ստեղծվել էր անսկզբունքայնության, ամեն ինչ ներելու, ծառայողական պարտքը ուղղակի խախտողների նկատմամբ բարեհոգի վերաբերմունքի իրադրություն։ Պլենումը նշեց, որ իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման գործում ետ մնալու հիմնական պատճառներն են ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման մակարդակի իջեցումը և անհամապատասխանությունը առաջադրված խնդիրների ու աշխատանքի ոճի և մեթոդների միջև։

Շրջադարձը դեպի էկոնոմիկայի զարգացման որակական գործոնները, դեպի տնտեսավարման ինտենսիվ մեթոդները հրամայաբար պահանջում է ապահովել կառավարման ապարատի հստակ ու ներդաշնակ աշխատանքը, ըստ ամենայնի ամրապնդել պետական և կատարողական կարգապահությունը։

Կենսագործելով կուսակցության և կառավարության որոշումները՝ Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեն ու նրա տեղական մարմինները անցկացրել են դիրեկտիվ մարմինների ցուցումների և սեփական որոշումների կատարման վիճակի մի շարք ստուգումներ սննդարդյունաբերության, առևտրի մինիստրություններում, ձկնային տնտեսության միավորումում և մի քանի այլ կազմակերպություններում։ Ստուգումները պարզեցին, որ նշված մինիստրություններն ու գերատեսչությունները որոշակի աշխատանք են կատարում կուսակցության և կառավարության դիրեկտիվները, արտադրական պլաններն ու առաջադրանքները կատարելու, աշխատավորների հարաճուն պահանջմունքների բավարարմանն ուղղված միջոցառումներն իրականացնելու համար։



digitised by A.R.A.R.@

Դրա հետ մեկտեղ, պետական և կատարողական դեռևս ցածր կարգապահության, ոչ հստակ ու համերաշխ աշխատանքի հետևանքով կառավարման ապարատի առանձին օղակներում վերադաս մարմինների շատ որոշումներ և ցուցումներ, ինչպես նաև սեփական որոշումները կատարվում են ոչ ժամանակին և ոչ լրիվ, կան քաշքշուկի, ձեռնարկությունների և կազմակերպությունների առաջ քաշած հարցերի լուծման բյուրոկրատական ձգձգման փաստեր։

Իրականացնելով վերահսկողությունը տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերի վերաբերյալ կուսակցության և կառավարության ցուցումների փաստական կատարման նկատմամբ, ժողովրդական վերահսկողության կոմիտեն ու նրա տեղական մարմինները բախվում են պետական կարգապահության կոպիտ խախտման փաստերին։ Այսպես, 1970—1974 թվականներին վերադաս մարմիններն ընդունել ու տվել են ավելի քան 240 որոշում ու հրաման Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի վերակառուցումն ավարտելու, տեխնոլոգիական պրոցեսները կարգավորելու, արտադրական կարողությունները գործարկելու, արտադրության աճն ապահովելու և շրջապատի միջավայրին ու շրջանի բնակիչների առողջությանը հսկայական վնաս հասցնող ծծմբաշատ գազերը լրիվ վերամշակելու և արտադրության վնասակար թափոնները օգտագործելու մասին։ Մինչդեռ առաջադրված խնդիրներից և ոչ մեկը գործնականորեն մինչև այժմ լրիվ լուծված չէ։ Կոմբինատի վերակառուցումը, որն սկսվել է դեռևս 1959 թ., իրականացվում է չափազանց դանդաղ։ Նախահաշվով նախատեսված 90 մլն ռուբլուց անցած 16 տարում իրացվել է միայն 56 մլն ռուբլի։ Բազմիցս խախտվել են վերակառուցումն ավարտելու համար սահմանված ժամկետները։ Տեղի են ունեցել տեխնոլոգիական և արտադրական կարգապահության սիստեմատիկ խախտումներ, որոնց հետևանքով չեն կատարվել հնգամյակի անցած չորս տարիների պետական պլանները և չեն ապահովվել հնգամյա պլանով նշված արտադրության աճի տեմպերը։

Չափազանց անբավարար է կենսագործվում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի որոշումը, որը ընդունվել է ի կատարումն մասսայական պահանջարկ ունեցող ապրանքների արտադրության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների։

1973—1974 թթ. Երևանի տեխնոլոգիական սարքավորանքի գործարանը առաջադրանքով նախատեսված 15 անուն մասսայական սպառման ապրանքներից թողարկել է միայն յոթ անուն։

Մասսայական պահանջարկ ունեցող ապրանքների թողարկման առաջադրանքները չեն կատարում նաև միութենական ենթակայության ուրիշ ձեռնարկություններ, ինչպես, օրինակ, Աբովյանի կիսահաղորդիչ սարքերի, Կիրովականի «Ավտոմատիկա», Սևանի գործադիր սարքերի, Լենինականի շինարարական մեքենաների գործարանները։

Մասսայական պահանջարկ ունեցող ապրանքների արտադրության վերաբերյալ կառավարության առաջադրանքների կատարման գործում անկարգապահություն ցուցաբերելու հետևանքով առևտրական կազմակերպությունները



հաճախ հնարավորություն չեն ունենում բավարարելու բնակչության պահանջները և ստիպված են լինում կուլտուր-կենցաղային և տնտեսական օգտագործման շատ ապրանքներ հանրապետություն ներմուծել երկրի հեռավոր շրջաններից, թեև դրանց արտադրությունը կարելի է և պետք է կազմակերպել տեղում։

Կոմիտեն լուրջ թերություններ է բացահայտել նաև գյուղատնտեսության մինիստրության ղեկավարության և կոլեգիայի, նրա վարչությունների ու բաժինների աշխատանքի ոճի և մեթոդների մեջ։

Հարկ է խոստովանել, որ ժողովրդական վերահսկողության կոմիտեն դեռևս անբավարար է օգնում մինիստրությունների և գերատեսչությունների ժողովրդական վերահսկողության խմբերին, որոնցից շատերն ակտիվորեն չեն ներազդում կառավարման ապարատի գործերի վիճակի վրա, չեն կարողացել անհանդուրժողության մթնոլորտ ստեղծել պետական կարգապահությունը խախտելու, հանձնարարված գործի նկատմամբ անպատասխանատու վերաբերմունք ցուցաբերելու փաստերի շուրջը։

Բացահայտ անկարգապահությամբ միայն կարելի է բացատրել այն, որ մի շարք ձեռնարկություններ չեն կատարում պետական պլանները։ Իններորդ հնգամյակի անցած չորս տարիներին հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների մոտ 10—12 տոկոսը ամեն տարի չի կատարել արտադրական պլանները։ 1971—1974 թթ. աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքները չեն կատարել 130—200 արդյունաբերական ձեռնարկություններ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքները չկատարելու, արտադրական կարողությունները անբավարար օգտագործելու, աշխատաժամանակի կորուստների և այլ թերությունների պատճառով զգալի թվով արդյունաբերական ձեռնարկություններ իջեցրել են արտադրության մակարդակը նախորդ տարվա ձեռք բերածի համեմատությամբ։

Ձեռնարկությունների նորմալ աշխատանքին խանգարում են նաև պլանային կարգապահության խախտումները, տարվա առաջին եռամսյակներում արտադրանքի արտադրության պլանները կրճատելու և կամ դրանց մեջ բազմաթիվ փոփոխություններ մտցնելու արատավոր պրակտիկան։

Հաճախ դա այլ բան չէ, քան այն, երբ պլանները արհեստականորեն համապատասխանեցնում են փաստացի կատարմանը, ստեղծում են բարեհաջողության վիճակ, ինչպես նաև պայմաններ՝ ապօրինի և անարդարացի պարգևներ ստանալու համար։ Օրինակ «Պոլիվինիլացետատ» գործարանում արտադրության պլանները, իջեցման նպատակով, 1973 և 1974 թվականներին 31 անգամ ճշգրտվել են։

Հանրապետական կոմիտեի ստուգումներով բացահայտվել են բազմաթիվ փաստեր, երբ առանձին ձեռնարկությունների ղեկավարներ, սահմանված պլաններն ու առաջադրանքները կատարելու նպատակով աշխատավորական կոլեկտիվներին մոբիլիզացնելու համար, կազմակերպչական աշխատանք ծավալելու փոխարեն, ձգտում էին իջեցնել ձեռնարկությունների համար սահմանված տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, դրանով դանդաղեցնում զարգացման տեմպերը, խախտում ձեռնարկությունների աշխատանքի ռիթմը, իջեցնում արտադրական կարողությունների օգտագործման գործակիցը։

Գունավոր մետալուրգիայի վարչության հաշվետու տվյալներով հնգամ-



digitised by A.R.A.R.@

յակի չորս տարում հաջողությամբ կատարվել են արտադրանքի ծավալի և աշխատանքի արտադրողականության աճի տարեկան պլանները, մինչդեռ հնգամյա պլանով սահմանված առաջադրանքների դիմաց ժողովրդական տնտեսությանը պակաս է տրվել 38 հազար տոննա խառնուրդաշատ պղինձ, 44 հազար տոննա զտված պղինձ, 320 հազար տոննա ծծմբաթթու, 790 հազար տոննա ցեմենտ, զգալի քանակությամբ կապար, ցինկ և պղինձ՝ կոնցենտրատներով: Մեծ ճեղքվածք է գոյացել նաև հնգամյակի՝ 1975 թ. կոնտրոլ թվերի և ընթացիկ տարվա համար վարչության ձեռնարկություններին իջեցված պլանի միջև:

Ձեռնարկությունների համար հնգամյակի կոնտրոլ թվերի համեմատությամբ ավելի ցածր պլաններ ու առաջադրանքներ սահմանելու, տարվա ընթացքում դրանք իջեցնելու փաստեր են եղել նաև թեթև ու սննդի արդյունաբերության մինիստրություններում, ինչպես նաև հանրապետության տերիտորիայում գտնվող միութենական գերատեսչությունների մի քանի ձեռնարկություններում:

Անկարգապահության, նշված կազմակերպական-տեխնիկական միջոցառումները ժամանակին չիրականացնելու հետևանքով գործարկված արտադրական շատ կարողություններ լրիվ չեն օգտագործվում, որի պատճառով ընկնում է հանրային արտադրության արդյունավետությունը:

«Հայքիմմեքենա» միավորումում 1971—1972 թթ. գործարկված կոմպրեսորների արտադրակարողությունները օգտագործվում են 76,9, պոմպերինը՝ 58,2 տոկոսով: «Հայէլեկտրամեքենա» միավորումում ուժային տրանսֆորմատորների արտադրակարողություններն օգտագործվում են 50 տոկոսից պակաս չափով:

Մասիսի թղթե տարայի կոմբինատում, որը գործում է արտասահմանյան սարքավորումներով, տուփի ստվարաթղթի արտադրակարողությունները 1973 թ. օգտագործվել են 39, 1974 թ.՝ 50 տոկոսով, փաթեթաթղթինը՝ համապատասխանաբար 42 և 57 տոկոսով:

Սննդի արդյունաբերության մինիստրության համակարգի հրուշակեղենի արտադրակարողությունները 1974 թ. օգտագործվել են 61, գարեջրինը՝ 73,4, հանքային ջրերինը՝ 78,1 և ոչ-ալկոհոլային խմիչքներինը՝ 80,7 տոկոսով:

Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում զգալի աշխատանք է կատարվել շինարարական ինդուստրիան և շինանյութերի արդյունաբերությունը զարգացնելու, շինարարական և մոնտաժային կազմակերպությունների նյութատեխնիկական բազան ամրապնդելու, շինարարության մեջ առաջավոր փորձը արմատավորելու ասպարեզներում: 1971—1974 թթ. ընթացքում գործարկվել են ավելի քան 300 ձեռնարկություն և խոշոր արտադրամաս: Պետական միջոցների հաշվին շահագործման են հանձնվել 5.300 հազար քմ բնակելի տարածություն, կուլտուրայի և կոմունալ-կենցաղային տասնյակ օբյեկտներ:

Հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինները սիստեմատիկաբար ստուգում են թեթև, սննդի, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության կարևորագույն օբյեկտների, հայկական ատոմային էլեկտրակայանի, գյուղատնտեսական արտադրության, բնակարանային, կոմունալ և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության ընթացքը: Խոշոր հաջողություններին ու նվաճումներին զուգընթաց՝ ստուգումները կապիտալ շինա-



րարության բնագավառում ևս բացահայտեցին թերություններ ու խախտումներ: Հնգամյակի և ոչ մի տարում չեն կատարվել կապիտալ շինարարության պլաններն ու հիմնական տեխնիկատնտեսական ցուցանիշները: Հիմնական ֆոնդերի գործարկման պլանները հնգամյակի չորս տարում կատարվել են 75 տոկոսով:

ՍՄԿԿ XXIII, իսկ ապա նաև XXIV համագումարների դիրեկտիվներով նախատեսված էր ութերորդ և իններորդ հնգամյակներում կառուցել ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության Զոդի ոսկու հանքի կոմբինատը և Արարատի ոսկեզտիչ ֆաբրիկան՝ դրանք 1975 թ. գործարկելու պայմանով: Հնգամյակի անցած չորս տարիներից և ոչ մեկում այդ օբյեկտներում չեն կատարվել կապիտալ ներդրումների և շինմոնտաժային աշխատանքների պլանները: Նույնպիսի վիճակ գոյություն ունի նաև Շինուհայրի ռետինե կոշիկի գործարանի և ուրիշ շատ օբյեկտների շինարարությունում:

Արդեն տասը տարի է, ինչ «Երքիմշին» տրեստը Երևանում կառուցում է համամիութենական գիտահետազոտական «Պոլիմեր» ինստիտուտը, իսկ «Երարդշին» տրեստը՝ քարի և սիլիկատների գիտահետազոտական ինստիտուտը: Բնական է, որ մինչև այդ օբյեկտների շինարարության ավարտումը մշակված տեխնոլոգիան և տեխնոլոգիական սարքավորումները բարոյապես կհնանան և կպահանջվի կատարելագործել դրանք ու վերակառուցել օբյեկտները: Շինարարության մեջ բացահայտվել են նաև դրամական, նյութական և աշխատանքային ռեսուրսները բազմաթիվ օբյեկտների վրա փոշիացնելու փաստեր, որը հանգեցնում է անավարտ շինարարության ծավալի աճի և կապիտալ ներդրումների անարդյունավետ օգտագործման:

Կապիտալ շինարարության պլանները սիստեմատիկաբար չկատարելու և կառուցվող օբյեկտների գործարկման ժամկետները հաճախակի խախտելու հետևանքով միայն Հայկական ՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության «Կիրշին» տրեստում անցած երկու տարում թերավարտ շինարարության ծավալն աճել է ավելի քան երկու անգամ և 1972 թ. 4,7 մլն ռուբլուց 1974 թ. հասել է մինչև 11 մլն ռուբլու:

Ժողովրդական վերահսկողության մարմինները ստուգումների միջոցով բացահայտել են պաշտոնատար անձանց կողմից պետական, ֆինանսական և պլանային կարգապահության կոպիտ խախտումների, պետությանը խաբելու, սոցիալիստական սեփականության պահպանումը չապահովելու և պաշտոնական դիրքը չարաշահելու բազում փաստեր: Ժողովրդական վերահսկողության կոմիտեներն ստիպված են եղել նրանց նկատմամբ կիրառել պատժի խիստ միջոցներ՝ հեռացնել զբաղեցրած պաշտոնից, նյութերը հանձնել համապատասխան մարմինների՝ կուսակցական և վարչական պատասխանատվության ենթարկելու, կարգապահական տույժ տալու և դրամական տուգանք գանձելու համար: Մինչդեռ, այդ ամենից կարելի կլիներ խուսափել, եթե մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարները ժամանակին ձեռնարկեին անհրաժեշտ միջոցներ՝ նշված բացասական երևույթները կանխելու, կադրերին սխալներից ու խախտումներից զերծ պահելու համար:

Ելույթ ունենալով Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության ակտիվի ժողովում, Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ ժողովրդական վերահսկողության կոմի-



digitised by A.R.A.R.@

տեները, խմբերը և պոստերը, ժողովրդական վերահսկիչները պետք է իրենց ամենօրյա աշխատանքի ծրագիրը դարձնեն համակողմանի օգնությունը կուսկազմակերպություններին՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումները կատարելու համար: Ժողովրդական վերահսկիչների աչքից չպետք է վրիպեն ոչ ոք և ոչ մի բան, որոնք խանգարում են մեր առաջընթաց շարժմանը, մեր հաջողություններին, մեր սոցիալիստական ապրելակերպին: Կուսկոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները պարտավոր են ամեն կերպ պաշտպանել ժողովրդական վերահսկողության մարմինների և ժողովրդական վերահսկիչների բոլոր նախաձեռնությունները, ժամանակին արձագանքեն թերությունների բացահայտմանը և լուծեն առաջադրված խնդիրները:

Ժողովրդական վերահսկողության մարմինների բազմակողմանի ու նպատակամղված աշխատանքը տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում տալիս է նկատելի արդյունքներ և արժանանում կուսկազմակերպությունների և աշխատավորական լայն զանգվածների միահամուռ աջակցությանը:

Կուսակցական, պետական և կատարողական կարգապահության լիա ամենայնի բարձրացումը, ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թ. դեկտեմբերյան պլենումի որոշումների, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ելույթում շարադրված պահանջների անվերապահ կատարումը, ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումի որոշումների լրիվ իրագործումը հուսալի երաշխիք են, որ հաջողությամբ կկատարվեն ընթացիկ հնգամյակի եզրափակիչ՝ 1975 թ. պետական պլանները, կայուն բազա կստեղծվի տասներորդ հնգամյակի խնդիրները լուծելու և ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու համար:

---

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱՐԾԻՔԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

**Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՐՑԵՐԸ ՄՇՏԱՊԵՍ ԳՏՆՎՈՒՄ ԵՆ մեր կուսակցության ուշադրության կենտրոնում: ՍՄԿԿ ծրագրային փաստաթղթերում գաղափարական աշխատանքը բնորոշվում է որպես կոմունիստական շինարարության առաջավոր տեղամասերից մեկը: Գաղափարական կադրերի խնդիրն է դաստիարակչական աշխատանքի բոլոր միջոցներով աշխատավորներին մասնակից դարձնել արտադրության արդյունավետության բարձրացմանը և հասարակական գործերի կառավարմանը, յուրաքանչյուր քաղաքացու համակել կոմունիստական բարոյականության բարձր սկզբունքներով, ընդսմին, մեծ ուշադրություն հատկացնելով գաղափարա-դաստիարակչական խնդիրների կոմպլեքսային լուծմանը:

Գաղափարական աշխատանքի հիմնական ձևերի ու մեթոդների կոմպլեքսում, նրա արդյունավետության ապահովման գործում կարևոր տեղ են գրավում հասարակական կարծիքի ուսումնասիրությունը, ձևավորումն ու հաշվառումը: Ավելի լայն առումով հասարակական կարծիքի ուսումնասիրությունն անհրաժեշտ է բազմապիսի հասարակական հարաբերությունների ճիշտ կարգավորման, սոցիալական պրոցեսների կառավարման փաստական կազմակերպման համար: «Ժողովրդական մասսայի մեջ,— նշել է Վ. Ի. Լենինը,— մենք, այնուամենայնիվ, մի կաթիլ ենք ծովում, և մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ, երբ ճիշտ ենք արտահայտում այն, ինչ որ գիտակցում է ժողովուրդը» (Երկեր, հ. 33, էջ 360—361):

Ժողովրդի գիտակցությունն առավել ակներև ու անմիջականորեն է դրսևորվում հասարակական կարծիքում: Իսկ վերջինս պայմանավորված է հասարակական գաղափարախոսությամբ, հոգեբանության վիճակով և հասարակական գիտակցության բոլոր ձևերի զարգացման մակարդակով: Հասարակական կարծիքը հասարակական գիտակցության տարբեր ձևերի խտացված արտահայտությունն է՝ որոշակի երևույթի ու իրադարձության, անձի, խմբի ու կոլեկտիվի վարքագծի սոցիալ-հոգեբանական կոնկրետ գնահատմամբ:

Հասարակական կարծիքը ձևավորվում և գործում է ինչպես սոցիալական, դեմոգրաֆիական, ռեգիոնալ, ազգային, արտադրական, քաղաքական և զանազան այլ խմբերի, այնպես էլ ողջ հասարակության շրջանակներում: Ընդորում, այն չի հանգեցվում սոսկ նրա կրողների գիտակցությանը, այլ արտահայտում է նրանց ռեալ փոխհարաբերությունները:

Հասարակական կարծիքի ազատ արտահայտման և գործուն ներդրման վճռական նախապայմաններն են սոցիալ-տնտեսական ու քաղաքական կարգերը, ինչպես նաև լայն մասսաների կրթական ու կուլտուրական մակարդակը: Կապիտալիստական հասարակարգում քիչ չեն խոսում ու գրում հասարակա-

նշեց, որ «Վերջին տարիներս մեր գործունեության շատ ոլորտներում թուլացել
է կուսակցական և պետական կարգապահությունը, նվազել պահանջկոտությու-
նը կադրերի նկատմամբ, որոնց մի մասը սկսել է անպատիժ կերպով չկատա-
րել իր ուղղակի պարտականությունները, անպատասխանատվություն և ան-
կարգապահություն ցուցաբերել դիրեկտիվ մարմինների որոշումների կատար-
ման գործում։ Առանձին տեղերում ստեղծվել էր անսկզբունքայնության, ամեն
ինչ ներելու, պաշտոնական պարտքը ուղղակի չկատարողների նկատմամբ նե-
րողամտության մթնոլորտ»։ Վերջին հաշվով, վնաս էր հասցվում քաղաքա-
ցիների շահերին, կուսակցական ու սովետական մարմինների հեղինակու-
թյանը։
Պլենումում խոր վերլուծության ենթարկվեցին նման երևույթների առա-
ջացման պատճառները, նշվեցին դրանք արագ արմատախիլ անելու ուղիները։
Անցած կես տարում ՀԿԿ Կենտրոնական կոմիտեն, կուսակցության քաղ-
կոմներն ու շրջկոմները ձեռնարկել են կարևոր միջոցառումների մի ողջ հա-
մալիր։ Ակներև են կատարված աշխատանքի արդյունքները։ Տնտեսական
բնագավառում դրանք իրենց արտահայտությունն են գտել արդյունաբերական
արտադրության զարգացման՝ նախորդ տարիների համեմատությամբ ավելի
բարձր տեմպերում։ Կատարվել ու գերակատարվել են կարևորագույն արտա-
դրատեսակների թողարկման պետական առաջադրանքները։ Կոլտնտեսու-
թյունների ու սովխոզների մեծամասնությունը ժամանակին և ագրոտեխնիկա-
կան բարձր մակարդակով ավարտեց գարնանային գյուղատնտեսական աշխա-
տանքները։ Գերակատարվել են անասնապահական մթերքների արտադրու-
թյան և պետությանը դրանց վաճառքի կիսամյա առաջադրանքները։ Որոշ չա-
փով բավարարվել է առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկ-
ման ձեռնարկությունների ու տրանսպորտի աշխատանքը։ Լայն մասսաները
մասնակցում են այդ ձեռնարկությունների գործունեությունը վերահսկելուն,
հասարակական կարգի և սոցիալիստական օրինականության պահպանմանը։
Նպատակասլաց կերպով շտկվում են կադրային քաղաքականությունում
անցյալում թույլ տրված սխալները։ Հունվարյան պլենումի նախանշած կուրսի
հետևողական անցկացման շնորհիվ հանրապետության աշխատավորական կո-
լեկտիվներում, քաղաքներում ու շրջաններում ստեղծվում է բարոյա-հոգեբա-
նական առողջ մթնոլորտ, որը նպաստում է մասսաների ստեղծագործական
ակտիվության աճին, ձևավորվում է գործուն հասարակական կարծիք իննե-
րորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և ՍՄԿԿ XXV
համագումարը պատվով դիմավորելու ռեալ հնարավորությունների մասին։
Պրակտիկան մի անգամ ևս հաստատում է գիտական կոմունիզմի կարևո-
րագույն այն դրույթը, ըստ որի հասարակական կարծիքը միայն այն դեպքում
է նպաստում կազմակերպական և գաղափարա-դաստիարակչական աշխա-
տանքի արդյունավետության բարձրացմանը, երբ կոնկրետ հարցերի լուծման
համար մոբիլիզացվում է բուն հասարակական կարծիքի և հասարակական գոր-
ծողության դիալեկտիկական միասնությունը։
պես հարկավոր է ապահովել հասարակական կարծիքի և հասարակական գոր-
Հասարակական կարծիքի ուսումնասիրման և ձևավորման մեխանիզմը
կատարելագործելու նպատակով ՍՄԿԿ ղեկավարությամբ ձեռնարկվող մի-
ջոցառումների սիստեմը կոմունիստական շինարարության բոլոր խնդիրների
իրականացման համար մասսաների ստեղծագործական ակտիվության հետա-
գա բարձրացման, հասարակության անդամներից յուրաքանչյուրին կոմունիզ-
մի ազնիվ սկզբունքներին ու իդեալներին համապատասխան մտածելակերպի,
գործելակերպի և ապրելակերպի ոգով դաստիարակելու կարևորագույն պայ-
մանն է։

# ՏԱՐԵՐԱՅԻՆԻ ԴՐՍԵՎՈՐՄԱՆ ԱՌԱՆՁՆԱ-
# ՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՕՐՈՔ

**Վ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

ԳԻՏԱԿՑԱԿԱՆԻ ԵՎ ՏԱՐԵՐԱՅԻՆԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ, սոցիալիզմի պայմաններում տարերային երևույթների դրսևորման առանձնահատկությունների պրոբլեմը մեծ հետաքրքրություն է ներկայացնում ինչպես տեսականորեն, այնպես էլ գործնականորեն։ Վ. Ի. Լենինը նշել է, որ «...գիտակցականության և տարերայնության հարաբերու-թյան հարցը ահագին ընդհանուր հետաքրքրություն է ներկայացնում, և այդ խնդրի վրա պետք է կանգ առնել ամբողջ մանրամասնությամբ» (Երկեր, հ. 5, էջ 493)։ Եվ դա հասկանալի է, քանի որ տարերայնությունը և գիտակցակա-նությունը հասարակական կյանքի առավել ընդհանուր կողմերն են։ Դրանց հարաբերակցության պրոբլեմի ճիշտ լուծմամբ է հասկանալի դառնում Հոկ-տեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակին հաջորդած թռիչքի էությունը, սոցիալիստական հասարակարգի զարգացման արմատա-կան տարբերությունները նախորդներից։ Այն հնարավորություն է ընձեռում նաև պարզաբանելու ժողովրդական մասսաների որակապես նոր խնդիրները սոցիալիստական հեղափոխության իրականացման, սոցիալիզմի և կոմու-նիզմի կառուցման գործում, ինչպես և ողջ խորությամբ ըմբռնելու կոմունիս-տական կուսակցության և սոցիալիստական պետության դերը հասարակական զարգացման մեջ։

ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ԳԻՏԱԿՑԱԿԱՆ Է ՀԱՄԱՐՈՒՄ հասարակական այն գործողությունները, որոնք կատարվում են նպատակադրված ձևով և մշտա-պես վերահսկվում են, հաշվառվում ու կարգավորվում։ Գիտակցականը՝ նպա-տակադրվածությունն ու պլանայնությունն է, հետևաբար և՝ մարդկանց կող-մից իրենց գործունեության սոցիալական հետևանքների ճիշտ ըմբռնումը։ Գիտակցականին բնորոշ է արդյունքների կանխատեսումը, դրանց համընկնու-մը նպատակներին, ընդ որում նկատի են առնվում մարդկային գործունեու-թյան ոչ միայն մերձավոր, այլև հեռավոր հետևանքները։ Գիտակցականը ներառում է նաև հասարակական կյանքի գիտական կառավարումը, որը խա-րսխվում է օբյեկտիվ զարգացման պահանջների ճիշտ ըմբռնման, հաշվա-ման, նախապես միասնական նպատակի ու դրա իրականացման ուղիների և միջոցների որոշման վրա։

Հարկավոր է տարբերել անհատի գիտակցական գործունեությունը հասա-րակականից։ Անհատը գիտակցաբար գործում է այն իմաստով, որ իր արարք-ները նախապես ծրագրում է և հասնում նպատակային որոշակի հետևանքնե-րի։ Սակայն երբ նրա արարքները բեկում ենք հասարակական գիտակցության պրիզմայով, տեսնում ենք, որ դրանք հանգեցնում են հեռավոր հասարակա-



digitised by A.R.A.R.@

# ՆԵՈԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՆՈՐ ՍՏՐԱՏԵԳԻԱՆ

**Հ. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ**

ՅՈԹԱՆԱՍՈՒՆԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՑ իմպերիալիզմի նեոգաղութատիրական քաղաքականությունը որոշակի փոփոխություններ կրեց։ Արդի պայմաններում իմպերիալիստական շրջաններն ստիպված եղան հրաժարվել զարգացող երկրների տնտեսական աճն արգելակող քաղաքականությունից և վարել «երրորդ աշխարհի» տնտեսական զարգացման տեմպերի աճին նպաստող քաղաքականություն։ Իմպերիալիստները հույս ունեն այդ երկրներում ազգային բուրժուազիայի հետ ամուր դաշինք կնքելու և բուրժուական ռեֆորմների միջոցով խուսափել սոցիալական նոր ցնցումներից։

«Երրորդ աշխարհի» նկատմամբ իմպերիալիստների այդ քաղաքականությունը ստացել է նեոգաղութակալական նոր ստրատեգիա անվանումը։ Այն ենթադրում է նեոգաղութատիրական ակցիաների մի ամբողջ կոմպլեքսի մշակում ու գործադրում։

Նեոգաղութատիրական նոր ստրատեգիայի գլխավոր նպատակներից մեկը աշխատանքի միջազգային նոր բաժանումն է։

Գիտատեխնիկական հեղափոխության ծավալումը հանգեցրեց այն բանին, որ անհամապատասխանություն ծագեց զարգացող երկրներում իմպերիալիզմի ստեղծած ու կոնսերվացրած արտադրության կառուցվածքի և աշխատանքի ժամանակակից միջազգային բաժանման պահանջների միջև։ «Երրորդ աշխարհի» հետամնաց տնտեսության կոնսերվացումը պիտանի չէր այլևս կապիտալիստական վերարտադրության սիստեմի համար։ Նեոգաղութատիրական ստրատեգիական նախկին կոնցեպցիան, որը բնորոշ էր 50—60-ական թվականների համար, վերջնականապես մտավ փակուղի։

Միևնույն ժամանակ գաղութային սիստեմի քայքայումը կապիտալիստական տնտեսության ներսում առաջացրեց սոցիալ-տնտեսական և քաղաքական պայմանների այնպիսի փոփոխություններ, որոնց հետևանքով լիակատար անհամապատասխանություն ծագեց աշխատանքի միջազգային կապիտալիստական բաժանման ժամանակակից ստանդարտների և զարգացող երկրների հետամնաց տնտեսության միջև։

Ահա թե ինչու վերջին մի քանի տարիներին իմպերիալիզմը վճռական քայլերի դիմեց՝ հրաժարվելու գաղութային տիպի աշխատանքի միջազգային բաժանման գոյություն ունեցող սիստեմի կոնսերվացման քաղաքականությունից։ Իսկ այդ սիստեմի պայմաններում զարգացող երկրները մնում են իմպերիալիստական այս կամ այն երկրի տնտեսության ագրարային-հումքային կցորդի վիճակում։ Այժմ նեոգաղութատիրության շահերն այլ բան են թելադրում։ Դրանք պահանջում են, որ զարգացող երկրներն ընդգրկվեն աշխատանքի միջազգային բաժանման նոր սիստեմի մեջ, որպես նրա ինտեգրացված



մաս՝ գլխավոր խնդիր ունենալով սպասարկելու համաշխարհային կապիտալիստական ողջ սիստեմի տնտեսական կարիքները։

Ի՞նչ միջոցներով է նախատեսվում իրականացնել նեոգաղութակալական նոր ստրատեգիան։ Ամենից առաջ դրան է ուղղված, այսպես կոչված, «հավասար պարտնյորության» կոնցեպցիան։ Նեոգաղութարարները փորձում են ապացուցել, թե կապիտալիստական զարգացած երկրների և «երրորդ աշխարհի» փոխհարաբերությունները թևակոխել են միանգամայն նոր՝ «պարտնյորության դարաշրջանը», երբ անխուսափելի են դարձել համաշխարհային կապիտալիստական տնտեսության շրջանակներում զարգացած կապիտալիզմի և զարգացող երկրների տնտեսական փոխադարձ կախվածության ուժեղացումը, միմյանց լրացնելու պահանջը։

«Հավասար պարտնյորության» կոնցեպցիան ելնում է այն բանից, որ աֆրոասիական և լատինաամերիկյան՝ երկրների առաջընթացի գլխավոր ազդակը ո՛չ թե դրսից ցույց տրվող օգնությունն է, այլ նրանց սեփական ջանքերի մոբիլիզացումը (օգնությունը միայն կարող է լրացնել այդ ջանքերը, բայց ոչ փոխարինել դրանց), որ զարգացող երկրների բախտի հանդեպ իբր, հավասարաչափ պատասխանատու են կապիտալիզմի զարգացած բոլոր երկրները։ Այստեղ պարզորոշ արտացոլված է ԱՄՆ-ի ձգտումը՝ կրճատել զարգացող երկրներին ցույց տրվող օգնությունը՝ ի հաշիվ կապիտալիստական զարգացած մյուս երկրների օգնության մեծացման։ Ենթադրվում է այդ իրականացնել միջազգային այնպիսի կազմակերպությունների միջոցով, ինչպիսիք են՝ Տնտեսական համագործակցության և զարգացման կազմակերպությունը (ՏՀԶԿ), Եվրոպական տնտեսական համագործակցությունը (ԵՏՀ), Ռեկոնստրուկցիայի և զարգացման միջազգային բանկը (ՌԶՄԲ), Միջազգային վալյուտային ֆոնդը (ՄՎՖ) և այլն։ Ակտիվորեն մասնակցելով զարգացող երկրների նկատմամբ արևմտյան տերությունների «նոր» ստրատեգիայի մշակմանը, այդ կազմակերպություններն առաջարկում են իրականացնել համապատասխան միջոցառումներ զարգացող երկրների տնտեսության երեք հիմնական մարզերում՝ արդյունաբերության, առևտրի, վարկային և ֆինանսա-վալյուտային բնագավառներում։

Ճիշտ է, արևմտյան տերությունների նեոգաղութատիրական քաղաքականության կոորդինացմանը էականորեն խոչընդոտում է այն, որ հետզհետե ուժեղանում է նրանց սոցիալ-տնտեսական զարգացման անհամաչափությունը, զարգացող երկրներում ավելի ուժգնորեն են բախվում իմպերիալիզմի երեք հիմնական կենտրոնների՝ ԱՄՆ-ի, Արևմտյան Եվրոպայի ու Ճապոնիայի շահերը։ Եվ, այնուամենայնիվ, միջիմպերիալիստական մրցակցության պայմաններում անգամ, արևմտյան տերությունները ջանում են զարգացող երկրների նկատմամբ մշակել ու կիրառել միասնական քաղաքականություն։

«Հավասար պարտնյորության» կոնցեպցիայի հեղինակները գտնում են, որ անհրաժեշտ է արևմտյան տերությունների և զարգացող երկրների միջև հիմնել ո՛չ միայն միջճյուղային, այլև ներճյուղային մասնագիտացման ու կոոպերացման նոր սիստեմ։ Դրանով իսկ, ասում են նրանք, ավելի նպաստավոր պայմաններ կստեղծվեն արտադրությունն առավել նպատակահարմար տեղաբաշխելու համար։

Այդ գաղափարը գործնականորեն իրականացվում է «երրորդ աշխարհի» հիմնական շրջաններում, այսպես կոչված, ծայրամասային արդյունաբերական կենտրոններ ստեղծելու միջոցով։ Դրա նպատակն է՝ աստիճանաբար «երրորդ աշխարհի» երկրներում վերաբազավորել առաջավոր կապիտալիստական երկրների արդյունաբերության այն ճյուղերը, որոնք չեն պահանջում մեծ մասշտաբի որակյալ աշխատանք, այսինքն, որոնք անմիջականորեն կապված են հանածոների արդյունահանման, գյուղատնտեսական հումքի արտադրության և դրանց նախնական վերամշակման հետ։ Ավելին, «հավասար պարտնյորության» կոնցեպցիայի կողմնակիցների մի մասը նույնիսկ գտնում է, որ «երրորդ աշխարհի» մի շարք երկրներում, որտեղ դա տնտեսապես շահավետ է,



digitised by A.R.A.R.@

պետք է ձեռնամուխ լինել ատոմային էներգետիկայի, էլեկտրոնային սարքավորումների և նորագույն այլ արտադրությունների ստեղծմանը: Բայց դա պետք է այնպես արվի, որ այդ երկրներում չհիմնվեն արտադրության լրիվ ցիկլով ձեռնարկություններ և տվյալ արտադրանքի արտադրության տեխնոլոգիական պրոցեսն այնպես կազմակերպվի, որ այն, այնուամենայնիվ, ավարտվի կապիտալիստական զարգացած երկրներում: Այլ խոսքով, զարգացող երկրները պետք է վերածվեն համաշխարհային կապիտալիստական արտադրության կոմպլեքսի զանազան օղակների, իսկ կոմպլեքսի շղթան պետք է ավարտվի իմպերիալիստական երկրներում:

Ինչ վերաբերում է զարգացած կապիտալիստական երկրներին, ապա դրանք պետք է մասնագիտանան միայն «տեխնոտար» և «գիտատար» ճյուղերում: Նախատեսվում է այդ երկրներում բացառապես կենտրոնացնել արտադրության առավել դինամիկ և հեռանկարային ճյուղերը, որոնք կարիք ունեն բարձրորակ բանվորական ուժի և կապիտալ մեծ ներդրումների: Դրանք գլխավորապես այն ճյուղերն են, որոնք զբաղված են արտադրամիջոցների արտադրությամբ և իրենց զարգացման մակարդակով պայմանավորում են ամբողջությամբ վերցրած գիտատեխնիկական առաջընթացը: Այս կերպ իմպերիալիստական բուրժուազիան հետապնդում է երկու նպատակ. նախ՝ առավելագույն չափով օգտագործել արդյունաբերական ճյուղերի մի մասը զարգացող երկրներ փոխադրելու հետևանքով ազատված որակյալ բանվորական ուժը, երկրորդ՝ կապիտալիստական զարգացած երկրներում արմատապես փոխել արտադրության կառուցվածքը այն հաշվով, որպեսզի աստիճանաբար վերացվեն պակաս մրցակցունակ ճյուղերը, շեշտակի բարձրացվի տնտեսական արդյունավետությունը:

Սահմանափակ չափով որակյալ աշխատանք պահանջող արտադրությունները «երրորդ աշխարհ» տեղափոխելը թելադրված է նաև զարգացած երկրներում բնության պահպանության շահերով: Իմպերիալիստական տերությունները և մոնոպոլիաները, անցանկալի համարելով վնասակար արտադրությունների կենտրոնացումը արևմտյան երկրներում, մտադիր են առաջին հերթին զարգացող երկրներ փոխադրել այնպիսի արտադրական հզորություններ, ինչպիսիք են պողպատի, չուգունի և գունավոր մետաղների ձուլման գործարանները, պահածոների, թղթի և ցելյուլոզի արտադրության, նավթամթերքների վերամշակման ձեռնարկությունները և այլն, որոնք ո՛չ միայն բացասաբար են անդրադառնում շրջապատող բնության վրա, այլև պահանջում են հողային մեծ տարածություններ: Բացի այդ, վնասակար արտադրությունների հետ կապված արդյունաբերական ձեռնարկություններում անհրաժեշտ է տեղադրել թանկարժեք մաքրող սարքեր: Ինչպես նշում են մասնագետները, շրջակա բնության պահպանման ծախսերը առաջիկա տարիներին ԱՄՆ-ին կստիպեն մեծ չափով կրճատել արտադրանքի շատ տեսակների արտադրությունը և դրանց արտահանումը:

ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ «ՆՈՐ» ԲԱԺԱՆՄԱՆ ՊԼԱՆԻ իրականացման գործում նեոգաղութակալության տեսաբանները առաջնակարգ դեր են հատկացնում զարգացող երկրների տնտեսության՝ կենսականորեն կարևոր ոլորտներում արևմտյան կապիտալի դիրքերի հետագա ամրապնդմանը: Արևմուտքի քաղաքականության նպատակն է, կապիտալի արագացված արտահանության շահերից ելնելով, այդ երկրներում ստեղծել առավել բարենպաստ ինվեստիցիոն մթնոլորտ: Ահա թե ինչու նրանք պահանջում են վերացնել զարգացող երկրներում արևմտյան մոնոպոլիաների գործունեության ամեն մի սահմանափակում: Մի բան, որ մեծապես կնպաստի զարգացող երկրներում արևմտյան մոնոպոլիաների մասնաճյուղերի խիտ ցանցի ստեղծմանը:

Նեոգաղութատիրական նոր ստրատեգիայի մյուս կարևոր խնդիրներից մեկը «երրորդ աշխարհի» և կապիտալիստական զարգացած երկրների տնտեսական հարաբերությունների ծանրության կենտրոնը առևտրի բնագավառ փոխադրելն է: Աշխատանքի միջազգային բաժանման նոր սիստեմի նախա-



ձեռնողների կարծիքով, անխուսափելի է առևտրի բուռն աճը կապիտալիստական զարգացած և զարգացող երկրների միջև: Բայց ահա թե ինչպես են նրանք դնում «երրորդ աշխարհի» երկրների ապրանքների ներմուծման հարցը. զարգացող երկրներին ստիպում են ընդունել դեպի արտաքին շուկա կողմնորոշվող տնտեսության ստեղծման ու զարգացման անհրաժեշտությունը, առաջարկում են նրանց հրաժարվել այն կոնցեպցիաներից, որոնք խարսխված են արտաքին շուկայից (ավելի ճիշտ՝ զարգացած կապիտալիստական երկրներից) միակողմանի կախվածության վրա, և ընդունել էքսպորտային ճյուղերի արագ զարգացման կոնցեպցիա: Արտադրության մասնագիտացման ու կոոպերացման ծրագրվող սիստեմը վերացնում է միջազգայնացված արտադրության նորմալ գործունեության համար անհրաժեշտ հումքի, կիսաֆաբրիկատների, հանգույցների և մասերի փոխադարձ մատակարարման արգելքները, իսկ դրանում մեծապես շահագրգռված են ո՛չ միայն կապիտալիստական զարգացած, այլև զարգացող մի շարք երկրներ: Վերջիններս պահանջում են լիբերալացնել արտահանումը, որպեսզի հնարավորություն ունենան ավելի շատ ապրանքներ առաքել արևմտյան շուկաները: Նրանց կարծիքով, էքսպորտային այդ ճյուղերն ի վիճակի են պատմական ամենակարճ ժամանակաշրջանում մոդեռնացնելու «երրորդ աշխարհի» տնտեսության կառուցվածքը, արմատապես արագացնելու զարգացող երկրների առաջընթացի տեմպերը:

Աշխատանքի միջազգային բաժանման նոր սիստեմի նպատակներին համապատասխան, առաջարկվում է զարգացող երկրներում վերացնել ագրարային-հումքային պրոտեկցիոնիզմն իր բոլոր տարատեսակներով, իսկ զարգացած երկրներում հրաժարվել ապրանքների այն տեսակների արտադրության ընդլայնումից, որոնց մրցակցությանն անընդունակ կլինեն դիմանալու զարգացող երկրներում արտադրվող համապատասխան ապրանքատեսակները: Նման միջոցառումները, ասում են նեոգաղութատիրական նոր ստրատեգիայի կողմնակիցները, զգալիորեն կփոխեն կապիտալիստական զարգացած երկրների տնտեսական կառուցվածքը, նպաստավոր պայմաններ կստեղծեն զարգացող երկրներից արտահանման գործի պրոտեկցիոնիստական արգելքները աստիճանաբար նվազեցնելու և այնուհետև լիովին վերացնելու համար:

ՊԵՏՔ Է ԱՍԵԼ, ՍԱԿԱՅՆ, ՈՐ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԶԱՐԳԱՑԱԾ երկրների և «երրորդ աշխարհի» միջև ծավալված առևտրական հարաբերությունների հետագա զարգացման ճանապարհին եղած արգելքները վերացնելու համար նախատեսվող միջոցառումներն առայժմ միայն ծրագրեր են: Իրականում կապիտալիզմի ճգնաժամային ցնցումները, նրա վալյուտային սիստեմի տենդահարությունը անխուսափելիորեն ուժեղացնում են պրոտեկցիոնիստական տենդենցները իմպերիալիստական պետություններում: Այս բանը շատ լավ են ըմբռնում զարգացող երկրների կառավարող շրջանները և գիտության մարդիկ: Բրազիլական տնտեսագետ Ալֆրեդո Կրուզեյրոն նշում է, թե պրոտեկցիոնիստական քաղաքականությունից հրաժարվելու և «տնտեսական բաց ստրուկտուրաներ» ստեղծելու կոչերը, որ բուրժուական տնտեսագետներն ուղղում են զարգացող երկրներին, գործնականում նշանակում են արևմտյան տերությունների էքսպանսիոնիստական ձգտումների դեմ-հանդիման այդ երկրների լիակատար զինաթափում:

«Երրորդ աշխարհի» տնտեսության աճի տեմպերի արագացումն ու նրա կառուցվածքի մոդեռնացումը նեոգաղութատիրական նոր ստրատեգիայի կողմից դիտվում է ոչ թե որպես զարգացող երկրների համար առաջնահերթ խնդիր, այլ որպես կապիտալիզմի համաշխարհային սիստեմի երկու խումբ երկրների միասնական ջանքերի արդյունք: Գիտակցաբար քողարկվում է այն փաստը, որ այդ երկու խումբ երկրների միջև եղած վիթխարի անհավասարության պայմաններում «հավասար պարտնյորությունը» ոչ այլ ինչ է, եթե ոչ Արևմուտքի նեոգաղութակալական էքսպանսիայի ուժեղացման չափազանց արդյունավետ միջոց:

Պարզ է, որ «հավասար պարտնյորության» կոնցեպցիան մի հիմնական



digitised by A.R.A.R.@

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱՐԱՐ ՈՒԺԸ

**Բ. Հ. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
ՀԿԿ Շամշադինի շրջկոմի երկրորդ քարտուղար

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՇԱՄՇԱԴԻՆԻ ՇՐՋԿՈՄԸ և սկզբնական կուսկազմակերպությունները աշխատավորությանը ժողովուրդների բարեկամության և սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու լավ ավանդույթներ ունեն։ Գաղափարական աշխատանքի այս բնագավառում մեր գործունեության հիմքում դրված է ՍՄԿԿ XXIV համագումարի այն պահանջը, որ ինտերնացիոնալ դաստիարակության բարելավումը պետք է դառնա կուսակցության կենտրոնական խնդիրներից մեկը։ «Կուսակցությունը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— այսուհետև ևս բոլոր աշխատավորներին կդաստիարակի սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային սահմանափակվածության ու սնապարծության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով՝ ինչ ձևով էլ որ դրանք արտահայտվեն, բոլոր ազգերի և ազգությունների հանդեպ խոր հարգանքի ոգով» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 101)։

Համագումարից հետո կուսշրջկոմը մշակեց գաղափարական գործունեության ծավալման պլան։ Այդ միասնական համակարգում զգալի տեղ հատկացվեց շրջանի աշխատավորությանը սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու խնդրին։

Ժողովուրդների բարեկամության և նրանց ինտերնացիոնալ կապերի ամրապնդման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջները լիովին կատարելու նպատակով՝ համատեղ միջոցառումների պլան մշակեցինք նաև Ադրբեջանի կոմկուսի Թովուզի շրջկոմի հետ։ Որոշեցինք կազմակերպել փոխադարձ դասախոսություններ, տնտեսական և կուլտուրական նվաճումների մասին հաղորդակից դարձնել միմյանց, շարունակել ավանդույթ դարձած սոցիալիստական մրցությունը, անցկացնել համատեղ գիտատեսական, կուլտուր-մասսայական և այլ միջոցառումներ։ Պլանի կենսագործմանը ակտիվորեն ձեռնամուխ եղան երկու հարևան շրջանների կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները, կուլտուր-լուսավորական հիմնարկությունները։ Նրանք լայնորեն օգտագործում են կուսակցական և կոմերիտական քաղուսուցման ընձեռած հնարավորությունները, դասախոսական պրոպագանդան, գիտատեսական կոնֆերանսները, շրջանային մամուլը, քաղաքական ինֆորմացիայի մյուս ձևերը։ Ավանդույթ է դարձել երկու շրջանների «Գիտելիք» ընկերությունների՝ «Ժողովուրդների բարեկամություն» սեկցիաների համատեղ նիստերի անցկացումը։ Այստեղ մշակվում է դասախոսությունների թեմատիկան, որոշվում են դասախոսները։ Ըստ փոխադարձ պայմանավորվածության՝ մեր շրջանի աշխատավորների առջև ինտերնացիոնալ բարեկամության թեմաներով դասախոսություններ են կարդացել Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն



սովետի դեպուտատ Ի. Սադիխովը, «Հադիգաթ» շրջանային թերթի խմբագիր Մ. Մուսաևը, կուսակցական և սովետական ղեկավար ընկերներ։

ՉԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ որակապես նոր աստիճանի են հասնում ազգային հարաբերությունները, ամրապնդվում են ժողովուրդների տնտեսական ու մշակութային կապերը և, հետևաբար, հույժ կարևորվում են ազգային հարցի վերաբերյալ լենինյան տեսության է՛լ ավելի խոր ուսումնասիրումն ու պրոպագանդումը։ Այս գործում էական դեր են խաղում ո՛չ միայն քաղուսուցման ցանցում ազգային հարաբերություններին առնչվող պրոբլեմների ուսումնասիրությունը, դասախոսական պրոպագանդան, այլև գիտատեսական կոնֆերանսների գումարումը։ Այդպիսի կոնֆերանսներ ենք հրավիրել մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի մասնաճյուղերի օգնությամբ և նրանց գիտական աշխատողների անմիջական մասնակցությամբ։ «Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը Անդրկովկասում», «Լենինը և Անդրկովկասը», «ՍՄԿԿ-ն ինտերնացիոնալիստների կուսակցություն է» թեմաներով գիտատեսական կոնֆերանսներն անցել են գաղափարական բարձր մակարդակով։ Զեկուցումներով հանդես են եկել Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Գ. Ղարիբջանյանը, պատմական գիտությունների դոկտոր Դ. Ստուրուան, պատմական գիտությունների թեկնածու Խ. Վեզիրովը և ուրիշներ։

Ակտիվ գործունեություն է ծավալել նաև կուսշրջկոմի դասախոսական խումբը, որի անդամները վերջին երկու տարում սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության թեմաներով բազմիցս հանդես են եկել աշխատավորների առջև։ Դրանցից նշենք թեկուզ մի քանիսը՝ «Լենինը հայ ժողովրդի բարեկամն է», «Հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամությունը», «ՍՍՀՄ-ն իմ հայրենիքն է», «Մենք 250 միլիոն ենք», «Ես ՍՍՀՄ-ի հասակակիցն եմ» և այլն։

ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՈԳՈՎ դաստիարակելը կուսշրջկոմը համարում է իր անմիջական գործը։ Այն մեզ մոտ կամպանիոն բնույթ չի կրում, այլ մշտապես գտնվում է շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների տեսադաշտում։ Շրջկոմի բյուրոյի նիստերում, կուսժողովներում քննարկում ենք այդ խիստ կարևոր խնդրին առնչվող հարցեր, բացահայտում թերությունները, որոնում և կիրառում սովետական հայրենասիրության և ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության ոգով աշխատավորների դաստիարակության նոր ձևեր ու մեթոդներ։ Գաղափարական գործունեության այս կարևոր բնագավառում մեր աշխատանքի բարելավմանը մեծապես նպաստեց ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի 1974 թ. որոշումը։ Այդ որոշումն ընդունելուց մոտ մեկ ամիս անց՝ հունիսի 6-ին, կուսշրջկոմի բյուրոյի նիստում քննարկեցինք աշխատավորներին հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում կուսկազմակերպությունների խնդիրները։ Քննարկմանը հաջորդեցին գործնական քայլեր։ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի որոշման կենսագործման նպատակով անցկացրինք սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատողների, հիմնարկ-ձեռնարկությունների և տնտեսությունների ղեկավարների շրջանային շերտավորված սեմինար-խորհրդակցություններ, որտեղ արծարծվեցին աշխատավորներին հայրենասիրության և ինտերնացիոնալ բարեկամության ոգով դաստիարակելու հարցերը, ընդհանրացվեց այդ ասպարեզում կուտակված փորձը, նշվեցին հետագա անելիքները։ Այդ խնդիրներին են նվիրվել նաև Պառավաքար, Ղրղի և Այգեձոր գյուղերում անցկացված խորհրդակցությունները, որոնց մասնակցեցին ագիտատորները, քաղինֆորմատորները, պրոպագանդիստները, հանրակրթական դպրոցների ներկայացուցիչները։ Նրանք լուրջ խոսակցություն ծավալեցին գյուղական երիտասարդության, դպրոցականների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության շուրջ, անհրաժեշտ համարեցին նրանց



digitised by A.R.A.R.@

համար պարբերաբար կազմակերպել դասախոսություններ ու զրույցներ, հանդիպումներ պատերազմի վետերանների, եղբայրական հանրապետությունների ներկայացուցիչների հետ։

Կուսշրջկոմի պլենումը 1974 թ. հուլիսին քննարկեց աշխատավորներին հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ասպարեզում շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության հետագա բարելավման հարցը։ Դա, ըստ էության, տվյալ խնդրի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման համար շրջանային կուսկազմակերպության ջանքերի յուրատեսակ ընդհանրացում էր։ Պլենումն արժեքավորեց աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության նախընթաց ժամանակամիջոցի լուրջ հաջողումները և նշեց, որ դեռ ամեն ինչ չի արված այդ ասպարեզում։

Կուսկազմակերպությունները, կուլտուր-լուսավորական հիմնարկությունները, երբեմն տարվելով միջոցառումների քանակով, աչքաթող են անում դրանց գաղափարական մակարդակը։ Առանձին կազմակերպություններում նկատվում է ձևական մոտեցում ինտերնացիոնալ դաստիարակության նկատմամբ, զգացվում են այդ գործն ինքնահոսի թողնելու տրամադրություններ։ Վերջին երեք տարում Հախումի, Թովուզի, Պառավաքարի, Նավուրի, Նորաշենի, Բերդի, Ներքին Կարմիր-աղբյուրի, Ջուրաթափի կոլտնտեսային և դպրոցական կուսկազմակերպությունները կուսժողովներում կամ բյուրոների նիստերում ոչ մի անգամ նման հարց չեն քննարկել։ Այս առումով նկատելի թերացել են նաև շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները։

Զգալի թերություններ բացահայտվեցին նաև «Գիտելիք» ընկերության ինչպես շրջանային, այնպես էլ սկզբնական կազմակերպությունների գործունեության մեջ, մասնավորապես նշվեց, որ դեռևս անբավարար է գործում ժողովուրդների բարեկամության սեկցիան։ Պլենումը նշեց, որ երիտասարդությանը և պատանիներին հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու հարցերին պատշաճ ուշադրություն չեն նվիրում կոմերիտմիության և ԴՕՍԱԱՖ-ի շրջկոմները, ժողկրթբաժինը։ Լուրջ թերություններով է անցկացվել համամիութենական լենինյան ստուգարքի առաջին փուլը։ ԼԿԵՄ կազմակերպությունները չեն հրավիրում պատանի ինտերնացիոնալիստների հավաքներ, անհրաժեշտ հոգատարություն հանդես չեն բերում Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հուշարձանների պահպանության, նրանց շրջապատի ծաղկապատման նկատմամբ։ Շրջանի հանրակրթական դպրոցներում, առանձնապես հասարակագիտության դասերին լայնորեն չեն պրոպագանդվում ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամության վեհ գաղափարները, ոչ բոլոր դպրոցներում է լավ կազմակերպվում սովորողների ռազմահայրենասիրական դաստիարակության գործը։ Աշխատավորներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու համար շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում տարվող աշխատանքը դեռևս հարկ եղած ձևով չի լուսաբանվում շրջանային «Այգաբաց» թերթում։

Շրջկոմի պլենումը, նշված թերությունները վերացնելու համար, ընդունեց համապատասխան որոշում և հաստատեց 1974—1975 թթ. աշխատավորներին ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով դաստիարակելու կազմակերպական-պրոպագանդիստական աշխատանքի պլան։ Սկզբնական կուսկազմակերպությունները, ելնելով պլենումի որոշումից, իրենց հերթին մշակեցին համապատասխան աշխատանքային պլաններ։

Պլենումից հետո կազմակերպեցինք համաշրջանային մի շարք միջոցառումներ։ Ուշագրավ էր եղբայրական Ադրբեջանի Թովուզի, Գետաբեկի և Վրաստանի՝ Սագարեջոյի կուսշրջկոմների հետ Շամշադինում մեր հրավիրած գիտապրակտիկ կոնֆերանսը։ Սոցմրցության դերը աշխատավորներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու վերաբերյալ զեկուցումներով հանդես եկան ՀԿԿ



Շամշադինի շրջկոմի առաջին քարտուղար Խ. Հովակիմյանը, Սագարեջոյի կուսշրջկոմի քարտուղար Ն. Գուրջիձեն, Գետաբեկի շրջսովետի գործկոմի նախագահ Ջ. Իսաևը։ Մամուլում ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության հարցերի պրոպագանդման իրենց փորձի մասին պատմեց Թովուզի «Հագիգաթ» շրջանային թերթի խմբագիր Մ. Մուսաևը։ Ղրղի—Գալաբա բարեկամական մրցությանն էր նվիրված Ղրղի գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Ա. Ոսկանյանի ելույթը։

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՄԵԶ ՄՈՏ, ԻՐՈՔ, ԴԱՐՁԵԼ Է* ինտերնացիոնալ դաստիարակության կարևոր ազդակ։ Այն նպաստում է եղբայրական հանրապետությունների հարևան շրջանների աշխատավորների բարեկամության ամրապնդմանը։ Այդ մրցության ընթացքում ծնունդ են առնում փոխադարձ օգնության, առաջավոր փորձի տարածման արդյունավետ ձևեր ու մեթոդներ, որոնք, իրենց հերթին, խթանում են արտադրության առաջընթացը, վճռական դեր խաղում ՍՄԿԿ XXIV համագումարի կանխագծումների իրականացմանը, իններորդ հնգամյակի խնդիրների լուծմանը։ Մրցության մեջ ամենաէականն այն է, որ մենք անշահախնդիր կերպով օգնում ենք միմյանց, տնտեսական բազմաթիվ թելերով կապվում իրար հետ, միմյանց հաղորդում նորն ու առաջավորը։ Թովուզի շրջանի Մ. Կասումովի անվան պետական տնտեսության 800 հեկտար հացահատիկի հնձին ամեն տարի օգնում են Ղրղիի կոմբայնավարներ Կ. Ասրյանը, Բ. Զարգարյանը, Բ. Ասիլբեկյանը։

Մրցության ընթացքում ծնվում են հայրենասիրական նախաձեռնություններ, որոնք նպաստում են էկոնոմիկայի աճին, ստանձնած պարտավորությունների կատարմանը։ Լավ գործերի հեղինակներ են Ղրղիի «Դեպի կոմունիզմ» կոլտնտեսության ծխախոտագործները։ Երիտասարդ կոմունիստ Էմմա Ավալյանը, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր Լեյլի Բադալյանը, Մարգո Առաքելյանը հանդես եկան ծխախոտի վաճառքի հնգամյա պլանը չորս տարում կատարելու նախաձեռնությամբ։ Այն լայնորեն արձագանք գտավ շրջանում. ավելի քան 200 ծխախոտագործներ չորս տարում կատարեցին վեց տարվա առաջադրանք, իսկ տնտեսությունը ծխախոտի հումքի վաճառքի հնգամյա պլանը գերակատարեց 300 տոննայով։ Այդ կոլտնտեսությունը 1974 թ. համամիութենական սոցմրցությունում հաղթող ճանաչվեց և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Կոլտնտեսության հաջողությունների մեջ իրենց ներդրումն ունեն նաև Թովուզի շրջանի «Գալաբա» սովխոզի աշխատավորները, որոնք Ղրղիում հավաքել և չորացրել են 360 հազար թելամետր ծխախոտ։ Երկու տնտեսություններն ամեն տարի ստանձնում են համատեղ սոցիալիստական պարտավորություններ, մշակում միմյանց օգնելու միջոցառումներ։

Այսօր Շամշադինում չկա մի տնտեսություն, որն իր մրցակից բարեկամը չունենա Թովուզի շրջանում։ Հետզհետե արդյունավետ է դառնում նաև Ջորաթան—Աղդան, Այգեձոր—Ջիրդախան, Ջինարի—Ղարավալար, Նորաշեն—Արմարդալլու, Վերին Կարմիր-աղբյուր—Կիրովի անվան պետական և կոլեկտիվ տնտեսությունների սոցմրցությունը։

Կուսշրջկոմն ամեն կերպ խրախուսում է եղբայրական հանրապետությունների հետ մրցող տնտեսություններին, նպաստում նրանց տնտեսական կապերի ընդլայնմանն ու ամրապնդմանը, օգնում փոխադարձ պարտավորությունների կատարմանը։ Այստեղ մենք հետապնդում ենք մեկ կարևոր նպատակ՝ մրցությունը և դրանից բխող փոխհարաբերություններն ու միջոցառումները ծառայեցնել մեր մարդկանց ինտերնացիոնալ դաստիարակությանը, նրանց մոտ արմատավորել այն զգացումը, որ սովետական հայրենիքը հզոր է ժողովուրդների անխախտ բարեկամությամբ ու միասնությամբ։ Անցած տարվա վերջին կուսշրջկոմի բյուրոյի նիստում քննարկեցինք Այգեձորի և Ջինարիի կոլտնտեսությունների սկզբնական կուսկազմակերպություններում աշխատավորներին հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիա-



digitised by A.R.A.R.@

# ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

**Լ. Գ. ՈՒԶՈՒՆՅԱՆ**
ՀԿԿ Երևանի կազմակերպության
Լենինյան շրջկոմի քարտուղար

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ուսում-
նական տարին անցավ ՍՄԿԿ XXIV համագումարի
որոշումների կենսագործման համար մղվող համաժողովրդական
պայմաններում: Սոցիալիստական մրցության հետագա ծավալման, պայքարի
դրական կոլեկտիվի և նրա յուրաքանչյուր անդամի արտա-
դրողականության բարձրացման գործում առավել մեծ նշանակություն է ստեղծագործական ակ-
տիվության կուսկազմակերպությունների, գաղափարական ճակատի բոլոր աշխատողների
գաղափարա-քաղաքական և դաստիարակչական գործունեությունը:
Քաղաքական կրթության բովանդակությունն ու նպատակները համակող-
մանի սահմանված են կուսակցության XXIV համագումարի փաստաթղթերով,
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ծրագրային ելույթներով:
Գաղափարական աշխատանքը նոր խնդիրների մակարդակին բարձրաց-
նելու առումով մեծ նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի՝ Բելոռուսիայի կու-
սակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի ընտրության
և դաստիարակության մասին որոշումը: Համակուսակցական նշանակություն
այդ փաստաթուղթը Երևանի Լենինյան շրջանի յուրաքանչյուր կուսկազմակեր-
պության համար դարձավ քաղաքական ուսուցման ներգործունության և գա-
ղափարական մակարդակի բարձրացման կոնկրետ ծրագիր:

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆՑԱԾ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐՈՒՄ տար-
րական օղակի քաղդպրոցներում ընդգրկված էին ավելի քան 1.360 կոմու-
նիստներ և անկուսակցական ակտիվիստներ: Միջին օղակը ամենամասսայա-
կանն էր: Այն ներառում էր մարքսիզմ-լենինիզմի 209 դպրոց՝ ավելի քան
4.140 ունկնդիրներով: Բարձրագույն օղակում ընդգրկվածների թիվն անցնում
էր 3.870 մարդուց: Կուսակցական լուսավորության ցանցն իր բոլոր օղակնե-
րով յուրաքանչյուր կոմունիստի հնարավորություն էր ընձեռում՝ հետևողակա-
նորեն ու խորապես տիրապետել մարքս-լենինյան տեսությանը, ստանալ քա-
ղաքական անհրաժեշտ գիտելիքներ, ուժեղացնել իր գաղափարական կոփվա-
ծությունը:
Ներկայումս մեր շրջանում կան ոչ քիչ թվով կուսկազմակերպություն-
ներ, որտեղ ստեղծվել է քաղաքական և տնտեսագիտական կրթության բավա-
կանաչափ հստակ սիստեմ: Էլեկտրասարքավորումների, ավտոդողերի գործարան-
ների, «Հայքիմմեքենա», Շահումյանի անվան կաշվի միավորումների, Կիրովի
անվան քիմկոմբինատի, պոլիմերների, կոմպլեքսային էլեկտրասարքավորում-
ների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտների և այլ կուս-



կազմակերպությունների կոմիտեներն ու բյուրոները որոնում ու գտնում են
ուսուցման կազմակերպման նոր ձևեր ու մեթոդներ, որոնք օգնում են՝ կոմու-
նիստների մոտ դաստիարակելու քաղաքական մարտիկին բնորոշ հատկանիշ-
ներ, բարձրացնելու նրանց արտադրական և հասարակական ակտիվությունը:
«Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման ձեռնարկություններում
պարապմունքների ընթացքում գլխավոր ուշադրությունը նվիրվում է մարք-
սիզմ-լենինիզմի ընդհանուր տեսական դրույթների ուսումնասիրությանը: Դրա
հետ միասին այստեղ ծանոթանում են կուսակցության տնտեսական և սոցիա-
լական քաղաքականության տեսական հիմունքներին, դրանց իրականացման
պրակտիկ մեթոդներին, կառավարման գիտությանը: Օրինակ, ԱԳԿ-ի աշխա-
տողներն ուսումնասիրում են աշխատանքի գիտական կազմակերպման, տեխ-
նիկական վերահսկողության բաժինը՝ թողարկվող արտադրանքի որակի բա-
րելավմանն առնչվող պրոբլեմները: Գործարանին առընթեր № 11 հերթափո-
խային դպրոցի կոմունիստներն անցած ուսումնական տարում զբաղված էին
կոմունիստական դաստիարակության տեսության ու պրակտիկայի հարցերի
ուսումնասիրությամբ: Այսպիսով, ձեռնարկության բոլոր կոմունիստներն ու
անկուսակցական ակտիվիստները տեսական սեմինարներում և քաղդպրոցնե-
րում ուսումնասիրում էին իրենց աշխատանքի բնույթին համապատասխանող
տեսական պրոբլեմներ, յուրաքանչյուր թեմա սերտորեն շաղկապում կոլեկտիվի
առջև ծառացած պրակտիկ խնդիրներին: Ուսուցման կազմակերպման այդպիսի
ձևը հնարավորություն էր ընձեռում տվյալ կոլեկտիվին՝ ուշադրությունը սևե-
ռել, առաջին հերթին, մարքս-լենինյան տեսության այն դրույթների վրա,
որոնք անմիջական կապ ունեն իր ամենօրյա գործունեության հետ:

ՀԱՐԿ ՉԿԱ ԱՊԱՑՈՒՑԵԼՈՒ, ՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԻ վճռական դեմքը
պրոպագանդիստն է: Նրա արդյունավետ գործունեությամբ են հիմնականում
պայմանավորված ունկնդիրների կողմից գիտելիքների յուրացման որակն ու
խորությունը, նրա օգնությամբ է ձևավորվում մարդկանց վերաբերմունքը քա-
ղաքական ուսուցման նկատմամբ: Տեսական և մեթոդական առումով ոչ բա-
վարար պատրաստականություն ունեցող պրոպագանդիստը հազիվ թե կարո-
ղանա ունկնդիրների մոտ հետաքրքրություն առաջացնել այն թեմայի հանդեպ,
որն ավանդում է ինքը:
Դյուրին չէ պրոպագանդիստական աշխատանքը, այն պահանջում է ոչ
քիչ ջանքեր ու ժամանակ: Չնայած դրան, քաղդպրոցների և տեսական սեմի-
նարների ղեկավարների ու պրոպագանդիստների ճնշող մեծամասնությունը
մեծ պատասխանատվությամբ է վերաբերվում այդ գործին, ուժեր չի խնայում
օգնելու իր ընկերներին՝ ունկնդիրներին, մարքս-լենինյան տեսությունը յու-
րացնելու համար: Մենք մշտական ուշադրություն ենք նվիրում պրոպագան-
դիստների ճիշտ ընտրությանը: Անցած ուսումնական տարում նրանց կազմը
զգալիորեն բարելավվեց. 442 մարդուց 331-ն ունեին բարձրագույն կրթություն,
շատ-շատերը՝ երկար տարիների գաղափարական աշխատանքի փորձ ու հմ-
տություն: Ահա նրանցից մեկը՝ տեսական սեմինարի ղեկավար Բելա Սդամ-
յանը: «Հայքիմմեքենա» արտադրական միավորման պլանային-տնտեսական
բաժնի վարիչն է նա և արդեն տասը տարի է, ինչ զբաղվում է պրոպագանդիս-
տական գործունեությամբ: Ունկնդիրները միշտ սիրով են մասնակցում նրա
վարած պարապմունքներին: Դա հասկանալի է. պրոպագանդիստը կարողա-
նում է քաղաքական գիտելիքները հաղորդել պարզ ու մատչելի, համոզիչ և
խոր, թեման շաղկապել ունկնդիրների աշխատանքային գործունեությանը,
հիմնավորել արտադրության կոնկրետ օրինակներով:
Ավտոդողերի գործարանում ուշադրության արժանի է նախապատրաստա-
կան № 1 արտադրամասի «Գիտական կոմունիզմի հիմունքները» դպրոցի պա-
րապմունքների անցկացման մեթոդը: Պրոպագանդիստ Մ. Ավետիքյանը ներա-
ծական պարապմունքի սկզբում ունկնդիրներին հանգամանորեն ծանոթաց-
նում է ուսումնասիրվող թեմաներին, յուրաքանչյուրին տալիս կոնկրետ հանձ-
նարարություն, անհրաժեշտ գրականության ցանկ, իսկ գործնական պարապ-



digitised by A.R.A.R.@

թյուն կոլեկտիվի անդամների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքին: Ղեկավարի տեսական լուրջ պատրաստականությունը անպայմանորեն պետք է դրսևորվի հասարակական-քաղաքական ակտիվ գործունեության այս կամ այն ձևում: Դրանից էլ պետք է ելնել՝ ղեկավար կադրերին պրոպագանդիստական աշխատանքի ներգրավելիս: Մեր շրջանում 145 ղեկավարներ անցած ուստարում աշխատում էին որպես պրոպագանդիստ՝ կուսակցական և կոմերիտական քաղաքական լուսավորության ցանցում:

Ուղեցույց ունենալով Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի ընտրության ու դաստիարակության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ կուսշրջկոմը կոնկրետ միջոցներ է ձեռնարկում շրջանի գաղափարական կադրերի, առաջին հերթին՝ պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը բարելավելու համար: Շրջկոմի մեթոդ-խորհուրդն ուժեղացրել է պրոպագանդիստներին, դասախոսական խմբի անդամներին ցույց տրվող օգնությունը: Մշակվել է կոնկրետ թեմատիկ պլան՝ ակտիվի երկու դպրոցների համար: Շրջանի ուսումնական հաստատությունների, առողջապահական, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների և վարչական մարմինների ղեկավար աշխատողների դպրոցում ուսումնասիրում են «Նոր մարդու ձևավորումը կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրներից մեկն է», իսկ կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցում՝ «Սոցիալիստական արտադրության գիտական կառավարման հիմունքները» պրոբլեմային թեմաները: Կուսշրջկոմին առընթեր ակտիվի այս երկու դպրոցների առանձին պարապմունքներ անցկացնելու համար հրավիրվում են նաև ՀԿԿ Կենտկոմի, ՀԿԿ քաղկոմի պատասխանատու աշխատողներ, գիտնականներ և անվանի մասնագետներ:

Ստեղծել ենք նաև շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ տարվող աշխատանքի որոշակի համակարգ: Յուրաքանչյուր շաբաթվա երկուշաբթի օրը ազատված քարտուղարները հավաքվում են սեմինար պարապմունքի և ունկնդրում կուսակցական աշխատանքի տեսության ու պրակտիկային վերաբերող դասախոսություններ ու զեկուցումներ: Թեմատիկ պլանը մշակված է ամբողջ տարվա համար և ներառնում է գաղափարական ու կուսակցական-կազմակերպական աշխատանքի բազմապիսի հարցեր:

Գաղափարական աշխատանքը ստեղծագործական բնույթ ունի: Դրա բարելավումը պահանջում է մշտապես որոնել և կիրառել նոր ձևեր ու մեթոդներ: Եվ որքան բազմատեսակ ու հարուստ են դրանք, այնքան արդյունավետ է գաղափարական գործունեությունը: Չնայած ձեռք բերված հաջողություններին, այս ասպարեզում թերացումները դեռևս զգալի են: Տեղյակ լինելով դրանց և վերլուծելով պատճառները՝ կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները ձեռնարկում են գաղափարական աշխատանքի թերությունների վերացման միջոցներ: Այդ խնդիրների վրա մեր ուշադրությունը սևեռեց նաև ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը, որը նշեց բոլոր ուժերի մոբիլիզացման անհրաժեշտությունը՝ արտադրական կոլեկտիվում տարվող գաղափարա-դաստիարակչական աշխատանքը բարելավելու, մասսայական-քաղաքական միջոցների ներգործունությունն ապահովելու համար: Ելնելով այս պահանջներից՝ կուսակցական քաղաքական լուսավորության հարցերը պարբերաբար քննարկում ենք կուսկոմիտեների, կուսբյուրոների, կուսշրջկոմի բյուրոյի նիստերում, կուսժողովներում, անցկացնում անհատական զրույցներ ղեկավար աշխատողների հետ, նրանց ներգրավում պրոպագանդիստական գործունեության մեջ:

Այդ քննարկումների ընթացքում ավելի մոտիկից ենք ծանոթանում իրավիճակին և մշակում դրա բարելավման միջոցառումներ: Առավել արդյունավետ էր անցած ուսումնական տարում կուսշրջկոմի բյուրոյում՝ № 1 տաքսամոտորային ձեռնարկության, № 2977 ավտոշարասյան, № 1 ավտոտրեստի «Հայկոոպտրանս» միավորման, Երևանի ավտոբազայի, «Երքիմշին», «Հայներուդ» տրեստների, բնակչության կենցաղսպասարկման մինիստրության շինմոնտաժային վարչության կուսկազմակերպությունների կողմից քաղաքական



ուսուցման ասպարեզում տարվող աշխատանքի վիճակի քննարկումը: Բյուրոն չեշտեց մասնավորապես № 1 տաքսամոտորային ձեռնարկության, № 2977 ավտոշարասյան և «Հայներուդ» տրեստի կուսբյուրոների հետևողական գործունեությունը: Նրանց մշտական հսկողության և պահանջկոտության շնորհիվ քաղխմբակների և տեսական սեմինարների պարապմունքներն անցնում են բովանդակալից, գաղափարական բարձր մակարդակով, ծրագրային նյութերի ուսումնասիրությունը շաղկապվում էր կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությանը, կոլեկտիվի առջև ծառացած խնդիրներին:

Շրջկոմի բյուրոն միաժամանակ նշեց, որ ուսումնասիրված ձեռնարկություններում քաղուսուցման կազմակերպման գործում կան նաև զգալի թերություններ. առանձին պրոպագանդիստներ երբեմն ձախողում են քաղդպրոցների պարապմունքները, դեռևս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում պարապմունքների գաղափարական մակարդակի բարձրացմանը, պրոպագանդիստների տեսական և մեթոդական օգնության կազմակերպմանը, նրանց փորձի փոխանակմանը: Պրոպագանդիստները չեն ապահովվում համապատասխան նյութերով ու անհրաժեշտ գրականությամբ: Նշվեց նաև որ կուսկազմակերպություններն անբավարար են զբաղվում մարքս-լենինյան տեսությունն անհատական պլանով ուսումնասիրողների հարցերով:

Շրջկոմի բյուրոն պարտավորեցրեց կուսկազմակերպությունների կոմիտեներին ու բյուրոներին՝ հետևողական աշխատանք տանել կոմունիստների և անկուսակցական ակտիվի գաղափարական-քաղաքական կրթության վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի և «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներն անշեղորեն կենսագործելու, դրանց ոգով կոլեկտիվի անդամների գաղափարական դաստիարակությունը բարելավելու համար: Հանձնարարվեց կուսկոմիտեների ու կուսբյուրոների նիստերում, կուսժողովներում լսել քաղդպրոցների պրոպագանդիստների և սեմինարների ղեկավարների ինֆորմացիան կատարած աշխատանքի վերաբերյալ, կազմակերպել տեսական կոնֆերանսներ և պրոպագանդիստական առաջավոր փորձի փոխանակում:

Շրջկոմի բյուրոյի որոշումը քննարկվեց կուսկազմակերպությունների ժողովներում: Դրանից հետո զգալի դրական տեղաշարժ նկատվեց քաղուսուցման կազմակերպման գործում: Դա պարզվեց, երբ պրոպագանդայի և ագիտացիայի բաժինն ապրիլ ամսին անդրադարձավ կուսշրջկոմի բյուրոյի որոշումների կատարման ընթացքին, մեթոդխորհրդի անդամները և հրահանգիչները եղան տեղերում, մասնակցեցին պարապմունքներին, ծանոթացան իրավիճակին: Այդ ուսումնասիրությունը միաժամանակ պարզեց, որ հարկ կա նոր ուսումնական տարում վերանայել պրոպագանդիստական կադրերի կազմը և այն համալրել ավելի կարող ուժերով:

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ՈՂՋ ՍԻՍՏԵՄԻ ԿԱՐԵՎՈՐ ՕՂԱԿ ԵՆ ամփոփիչ պարապմունքները, որոնք յուրատեսակ հաշվետվություն են կուսկազմակերպության առջև՝ ուսումնական տարվա ընթացքում ձեռք բերած գիտելիքների և այն մասին, թե ինչպես են դրանք շաղկապվել պրակտիկ խնդիրների լուծմանը: Այդ իսկ պատճառով, ամփոփիչ պարապմունքների խնամքով նախապատրաստումը, կազմակերպված, գաղափարական բարձր մակարդակով անցկացումը պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի և կուսկազմակերպությունների խնդիրն են եղել: Շրջկոմում, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատում, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական և «Պոլիվինիլացետատ» գործարաններում պրոպագանդիստների և կուսկազմակերպությունների քարտուղարների համար հրավիրեցինք շերտավորված խորհրդակցություն՝ «Ինչպես և ինչ մեթոդներով անցկացնել ամփոփիչ պարապմունքները» թեմայով: Բաժինը նախապես կազմել էր ամփոփիչ պարապմունքների անցկացման գրաֆիկ, շրջկոմի, շրջսովետի ապարատից և շրջանի ակտիվից կատարել կցումներ:

Կուսշրջկոմը խնդիր էր դրել կուսկազմակերպությունների և պրոպագան-



digitised by A.R.A.R.@

դիրների առջև՝ ամփոփիչ պարապմունքներն անցկացնել ստեղծագործաբար, հաշվի առնել ընթացիկ մոմենտի պահանջները, ունկնդիրների կրթական, քաղաքական-տեսական պատրաստվածության աստիճանը, կիրառել պարապմունքների անցկացման նոր ձևեր ու մեթոդներ: Ամփոփիչ պարապմունքները այդ պահանջներին համապատասխան և գաղափարական բարձր մակարդակով անցան Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, ավտոդողերի, կաբելի, ռետինատեխնիկական իրերի, էլեկտրասարքերի գործարաններում, կաշվի արտադրական միավորումում, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատում, կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում և այլ կուսկազմակերպություններում:

Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի կուսկազմակերպությունը և նրա կոմիտեն, առաջնորդվելով ՍՄԿԿ XXIV համագումարի և Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումներով, վերջին տարիներին աշխուժացրել և է՛լ ավելի արդյունավետ են դարձրել կոլեկտիվի շրջանում տարվող գաղափարական աշխատանքը, պատշաճ ուշադրություն են նվիրում քաղուսուցման կազմակերպմանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, նրանց գաղափարական և քաղաքական մակարդակի բարձրացմանը: Կիրովցիները պատասխանատվության մեծ զգացումով անցկացրին նաև ամփոփիչ պարապմունքները: Տարրական տիպի և մարքսիզմ-լենինիզմի հիմունքների 24 դպրոցներում անցկացվեցին ակտիվ զրույցներ՝ ուսումնական դասընթացի հիմնական թեմաների կարևորագույն հարցերի շուրջ, իսկ 14 տեսական սեմինարներում ամփոփիչ պարապմունքների ժամանակ հիմնական ուշադրությունը նվիրվեց այնպիսի պրոբլեմների, որոնք նպաստում են տեսության հարցերում ունկնդիրների ինքնուրույն ստեղծագործական աշխատանքի զարգացմանը: Քացախաթթվի արտադրամասում սեմինար պարապմունքի ամփոփումը կատարվեց տեսական կոնֆերանսի ձևով (այստեղ ուսումնասիրվում է «Արտադրության էկոնոմիկայի և կառավարման հիմունքները» թեման, սեմինարավարն է արտադրամասի պետ, տեխնիկական գիտությունների թեկնածու Բ. Գալստյանը):

Մեզ մոտ դրականն այն է, որ ամփոփիչ պարապմունքներում ոչ թե կրկնում էին անցած ծրագրային նյութը, այլ քննարկում էին դրա առավել բարդ հարցերը: Այդ քննարկումները հնարավորություն էին ընձեռում ունկնդիրներին՝ ավելի խորությամբ իմաստավորելու կուսակցության քաղաքականության և միջոցառումների բովանդակությունը, արդի փուլի գլխավոր պրոբլեմներն ու խնդիրները և իններորդ հնգամյակի պլանների կատարման նշանակությունը ՍՄԿԿ XXIV համագումարի նախանշած տնտեսական, սոցիալ-քաղաքական ծրագրի իրականացման համար:

Կուսկազմակերպությունները ջանում էին, որպեսզի ամփոփիչ պարապմունքները բխեն տվյալ ձեռնարկության կոնկրետ շահերից, քննարկված հարցերը նպաստեն աշխատանքային կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների լուծմանը:

Շրջկոմը նախատեսում է ուսումնական տարվա ավարտի կապակցությամբ անցկացնել ակտիվի ժողով, որտեղ մանրամասն կվերլուծվեն ուսումնական տարվա ընթացքում ձեռք բերված դրական փորձը և նկատված թերությունները, կմշակվեն միջոցառումներ նոր ուսումնական տարին կազմակերպված սկսելու համար:



# ՀԱՍՈՒՄՆԵՐ, ԽՆԴԻՐՆԵՐ, ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

ԸՆԹԱՑԻԿ ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ծնունդ է Նաիրիի շրջանը: Իր գոյության այդ կարճ ժամանակամիջոցում նա լուրջ քայլեր է արել էկոնոմիկայի զարգացման, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման ասպարեզում: Սակայն շրջանը տակավին շատ անելիքներ ու լուծման կարոտ խնդիրներ ունի: Նրա առջև միաժամանակ բացված են վերընթացի լայն հեռանկարներ:

Այս հարցերը պարզելու համար մեր խմբագրության աշխատողը հարցազրույց ունեցավ աշխատավորների դեպուտատների Նաիրիի շրջսովետի գործկոմի նախագահ Խ. Գ. Սաֆարյանի հետ: Ստորև հրապարակում ենք այն:

**ՀԱՐՑ.— Նաիրին առավելապես գյուղատնտեսական շրջան է: Հետաքրքրական է իմանալ, թե այդ ճյուղում ինչպիսի հասումներ ունեք:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ճիշտ է, մեր շրջանը երկրագործական է, բայց կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները կարողացել են շոշափելի գործ անել՝ էկոնոմիկայի առաջընթացն ապահովելու համար: Խոսեմ գյուղատնտեսության մասին: Նկատելի հաջողություններ ունենք հատկապես անասնապահության բնագավառում: Կոլեկտիվ ու պետական տնտեսությունները, ամբողջությամբ վերցրած, կատարել են անասունների գլխաքանակի ավելացման, անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի քառամյա առաջադրանքները, չորս տարում նվաճել կաթի ու մսի վաճառքի իններորդ հնգամյակի բնագծերը: Ընդ որում, հնգամյա պլանից դուրս զգալի քանակությամբ անասնապահական մթերքներ են արտադրել ու պետությանը վաճառել Քարաշամբի կոլտնտեսությունը, Պռոշյանի, Մրգաշենի, Քասախի, Քանաքեռավանի պետական տնտեսությունները, Գետամեջի առհմային թռչնաբուծական ֆաբրիկան:

Հատկանշական է անասնապահության աճը: 1974 թ., 1970 թ. համեմատությամբ, 20—21 տոկոսով ավելացել է խոշոր եղջերավոր անասունների, այդ թվում և կովերի գլխաքանակը: Տարեցտարի բարձրանում է կովերի կաթնատվությունը. բացարձակ աճը կազմում է 231 կգ: Կաթի համախառն արտադրությունն աճել է 720, մսինը՝ 198 տոննայով: Ձվի արտադրությունն ավելացել է 7 մլն 801 հազար հատով: Համապատասխանաբար ավելացել են նաև մթերքների վաճառքն ու հանձնումը պետությանը:

Անասնապահության բնագավառի հաջողություններին նպաստել են մի շարք կարևոր գործոններ: Նախ, տնտեսություններում լայնորեն արմատավորվել է մատղաշի ինտենսիվ աճեցման ու բտման եղանակը: 1974 թ. սեպտեմբերին Քարաշամբի կոլտնտեսության բազայի վրա ստեղծվել է խոշոր եղջե-



digitised by A.R.A.R.@

բավոր անասունների աճեցման և բտման համալիր: Երկրորդ, 1972 թ. համեմատությամբ գրեթե կրկնակի բարձրացել է անասնապահության մեքենայացման մակարդակը: Երրորդ, հիմնականում լուծվել է հանրային հոտը կերի պաշարով ապահովելու խնդիրը. շրջանը չորս տարում կատարել է խոտի, ծղոտի և սենաժի կուտակման հնգամյա պլանները:

Էական տեղաշարժեր են նկատվում բուսաբուծության ասպարեզում: 1974 թ. շրջանը հաջողությամբ կատարեց բանջարեղենի արտադրության ու պետական մթերումների պլանները և նվաճեց հացահատիկի մթերումների հնգամյա բնագծերը: Բուսաբուծության հետագա առաջընթացի վճռական նախապայման է ոռոգման կազմակերպումը: Այս առումով զգալի գործ է արվել: Ապարանի ջրամբարի շնորհիվ ոռոգելի ենք դարձրել 1.200 հեկտար հողատարածություն: 1974 թ. Երնջատափի ջրհան կայանը ջուր տվեց 200 հեկտար հողատարածությունների: Նույնքան էլ ոռոգելի կդարձնենք այս տարի:

Գյուղատնտեսության ասպարեզում մեր մարդկանց կատարած աշխատանքը գնահատվել է ըստ արժանվույն: 1974 թ. երկրորդ և երրորդ եռամսյակներում հանրապետության սոցմրցության մեջ անասնապահները գրավել են մրցանակային երկրորդ և երրորդ տեղերը, իսկ տարվա բարձր արդյունքների համար՝ արժանացել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին և դրամական առաջին կարգի մրցանակին:

Շրջանի աշխատավորությունը խանդավառությամբ է սկսել հնգամյակի եզրափակիչ տարին: Առաջին եռամսյակում, 1974 թ. նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, մեծ չափով աճել են մսի, կաթի, ձվի արտադրությունն ու վաճառքը: Մթերակայան հանձնած անասունների 99 տոկոսը եղել է միջակ և միջակից բարձր գիրության: Հաջողությամբ անցկացրինք գարնանացանը, տնկարկների գարնանային մշակությունը:

**ՀԱՐՑ.— Ինչպիսի՞ նվաճումներ կան արդյունաբերության ասպարեզում:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Մեր շրջանի էկոնոմիկայում արդյունաբերությունը ևս վճռական տեղ ունի: Տեխնիկական ճշգրիտ քարերի, գինու գործարանները, տեքստիլ-գալանտերեային իրերի ֆաբրիկան, «Հայկենցաղսարք» միավորման մասնաճյուղը, «Տնայնագործ», Հայսպառմիության արտադրական կոմբինատները 1974 թ. թողարկեցին ավելի քան 13,5 մլն ռուբլու արտադրանք կամ մեկուկես անգամ շատ, քան 1970 թ.: Վերջերս շահագործման հանձնվեց Լուսակերտի գործիքաշինական գործարանը:

Հնգամյակի անցած տարիներին Նոր Հաճընի տեխնիկական ճշգրիտ քարերի գործարանի 10 արտադրատեսակ արժանացել է որակի պետական նշանի: Շրջանի բոլոր ձեռնարկությունները կատարեցին և գերակատարեցին արտադրանքի թողարկման և իրացման 1974 թ. պլանները:

**ՀԱՐՑ.— Ինչպե՞ս են լուծվել շրջանի կուլտուր-կենցաղային զարգացման խնդիրները:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Հայտնի է, որ ՍՄԿԿ XXIV համագումարը սովետական ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի վերելքը համարեց իններորդ հնգամյակի գլխավոր խնդիրը: Մեր կարևոր նվաճումներից է բնակչության սպասարկման բարելավումը: Անցած տարիներին Քասախի, Զովունիի սովխոզներում, Նոր Հաճընի, Լուսակերտի քաղաքատիպ ավաններում, Եղվարդում և Նոր Գեղիում շահագործման են հանձնվել կենցաղսպասարկման տաղավարներ, որոնք ունեն կոշիկի, կարի, տրիկոտաժի, կահույքի, մետաղյա իրերի, անհատական պատվերների, բնակարանների, ժամացույցի, բարդ սարքավորումների, ոսկյա իրերի նորոգման և այլ արհեստանոցներ, լուսանկարչատուն: Քանաքեռավանի, Պռոշյանի, Մրգաշենի, Նոր Երզնկայի սովխոզներում բացվել են սպասարկման կետեր: Բազմազան ծառայություններ է կատարում շրջկենտրոնի կենցաղսպասարկման կոմբինատը, որը շրջիկ արհեստանոցի միջոցով սպասարկում է նաև տաղավարներ և կետեր չունեցող երեք գյուղերի բնակչությանը: Այս ամենի շնորհիվ բնակչության մեկ շնչին ընկնող կենցաղային ծառայությունը,1972 թ. 1 ռուբլի 50 կոպեկի դիմաց,



1974 թ. կազմեց 4 ռուբլի 50 կոպեկ: Գյուղական վայրերում այն աճել է յոթ անգամ:

Բարեկեցության կարևոր ցուցանիշ է մանրածախ առևտրի ապրանքաշրջանառության աճը, որը մեր շրջանում մեծ տոկոս է կազմում: Դրան նպաստել է առևտրի ցանցի ընդլայնումը: Հնգամյակի անցած տարիներին կառուցվել են առևտրի մի շարք օբյեկտներ: Նոր Հաճընում՝ պարենային ապրանքների, հացի խանութներ, խոհանոց-սրճարան, Լուսակերտում՝ հանրախանութ, Քասախի ու Զովունիի սովխոզներում՝ առևտրի կենտրոններ, Գետամեջում՝ ճաշարան և այլն:

Լայն թափ է ստացել դպրոցական և նախադպրոցական շենքերի շինարարությունը. կառուցել և շահագործման ենք հանձնել Նոր Գեղիում և Քարաշամբում՝ 480 տեղանոց միջնակարգ, Քանաքեռավանում՝ ութամյա դպրոցի, Նոր Հաճընում՝ 280 երեխայի համար մսուր-մանկապարտեզի շենքեր: Զգալիորեն հարստացել է դպրոցների նյութական բազան:

Աստիճանաբար բարեկարգվում և նոր, գեղեցիկ տեսք են ստանում մեր բնակավայրերը: Շրջկենտրոնում, Գետամեջում, Լուսակերտում, Նոր Գեղիում, Նոր Հաճընում, Արագյուղում հառնել են բարձրահարկ բնակելի շենքեր, որոնց ընդհանուր մակերեսը հասնում է ավելի քան 15 հազար քմ-ի: Շրջանի կոմունալ սպասարկման և բարեկարգման գրասենյակները ասֆալտապատել են ավանների և գյուղերի զգալի տարածության փողոցներ, միջգյուղային ճանապարհներ, հիմնարկ-ձեռնարկությունների բակերն ու շրջակայքը, խաղահրապարակները, կատարել այլևայլ աշխատանքներ:

**ՀԱՐՑ.— Սովետները ինչպե՞ս են օգտագործում ակտիվի ուժերը՝ իրենց առջև ծառացած խնդիրները լուծելու համար:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Աշխատավորների դեպուտատների շրջանային սովետի գործկոմը, գյուղական ու ավանային սովետների գործկոմները նախորդ ընտրություններից հետո դեպուտատական ակտիվի ուժերը մոբիլիզացնելու լավ փորձ են կուտակել: Շրջսովետի 75 դեպուտատներից 62-ն ընդգրկված են մշտական հանձնաժողովներում, 13-ը շրջսովետի գործկոմի անդամներ են: Եվ մենք շատ խնդիրներ լուծում ենք նրանց անմիջական ու ակտիվ օգնությամբ: Շրջանի տնտեսական ու կուլտուրական կյանքին, կոլտնտեսությունների, սովխոզների, շինարարական կազմակերպությունների գործունեությանը վերաբերող շատ հարցեր, դեպուտատների, ոչ-դեպուտատ ակտիվիստների կողմից ուսումնասիրվելուց հետո, քննարկել ենք շրջսովետի սեսիաներում ու գործկոմի նիստերում: Այդ քննարկումները և մշակված միջոցառումները նպաստել են գործերի վիճակի բարելավմանը: 1974 թ., օրինակ, շրջսովետի գործկոմն անդրադարձել է տնտեսությունների կողմից հողերի ու ջրի օգտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, անարտադրողական ծախսերի կրճատման, ֆինանսա-տնտեսական գործունեության վերլուծության, բնակչության առողջապահության, առևտրական ու կենցաղային սպասարկման, հասարակական սննդի կազմակերպման, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական բազմաթիվ խնդիրների: Հատկանշական է, որ քննարկված տարբեր բնույթի 119 հարցերից 78-ը նախապատրաստել են դեպուտատները: Նրանք հետևել ու նպաստել են նաև որոշումների կենսագործմանը:

Դեպուտատներն արդյունավետ գործունեություն են ծավալում մշտական հանձնաժողովներում, դրսևորում են նախաձեռնություն ու ակտիվություն: Նրանք ուսումնասիրում են տարբեր բնույթի հարցեր, արդյունքները քննարկում հանձնաժողովի նիստերում, մշակում առաջարկություններ և ներկայացնում գործկոմի նիստի քննարկմանը: Եվ օրինաչափ է, որ մենք շրջկենտրոնի ու մյուս բնակավայրերի կառուցապատման, բարեկարգման և կանաչապատման գործին մասնակից ենք դարձնում շրջանային, գյուղական ու ավանային սովետների մշտական հանձնաժողովներին: Նրանք իրենց աշխատանքային պլաններում նախատեսում են (ելնելով բյուջեի և սոցիալ-կուլտուրական շինարարության պայմաններից) այդ գործերին օգնելու միջոցառումներ, մշա-



digitised by A.R.A.R.@

կում առաջարկություններ՝ համապատասխան սովետների սեսիաներում ու գործկոմի նիստերում քննարկելու համար։ Դեպուտատական ակտիվի ուժերը հմտորեն են օգտագործում և իրենց առջև ծառացած խնդիրները պատվով կատարում Քանաքեռավանի, Լուսակերտի, Զովունիի, Նոր Հաճընի և Եղվարդի ավանային սովետների գործկոմները։ Ակտիվի վրա հենվելու և դեպուտատների գործունեությունը բարելավելու շնորհիվ Քանաքեռավանի սովետի գործկոմը 1974 թ. արժանացավ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի երրորդ կարգի մրցանակին։

Դեպուտատների ակտիվության բարձրացմանն ու նրանց նախաձեռնության զարգացմանը մեծապես խթանեց 1974 թ. հոկտեմբերին մեր անցկացրած «դեպուտատի օր» շրջանային սեմինար-խորհրդակցությունը։ Դրա արդյունավետությունը հուշեց մեզ՝ «դեպուտատի օր» հրավիրել նաև գյուղական և ավանային սովետներում։ Անկասկած, այս միջոցառումը դրական ազդեցություն ունեցավ նաև սովետների գործունեության վրա։

Շատ կարևոր է բարձրացնել դեպուտատների ո՛չ միայն ակտիվությունը, այլև հեղինակությունը, նրանց համար ստեղծել գործելու լայն հնարավորություններ։ Շրջանային սովետում առանձնացրել ենք դեպուտատի սենյակ։ Այստեղ դեպուտատներն ընդունում և ունկնդրում են աշխատավորներին, պատասխանում նրանց հարցերին, ապա՝ ընթացք տալիս բողոքներին ու առաջարկություններին։ Դեպուտատների հետ հաստատված սերտ կապի շնորհիվ շրջսովետի գործկոմին, գյուղական ու ավանային սովետների գործկոմներին հաջողվել է գյուղերում ու ավաններում սահմանել պատշաճ կարգուկանոն՝ սոցիալիստական օրինականությունը պահպանելու և հակահասարակական երևույթները կանխելու ու վերացնելու համար։

**ՀԱՐՑ.— Որո՞նք են շրջանի աշխատավորների գլխավոր խնդիրները առաջիկայում։**

ՊԱՏԱՍԽԱՆ.— ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումը, արժեքավորելով հանրապետության ժողովրդական տնտեսության հաջողությունները, միաժամանակ լուրջ թերություններ բացահայտեց այդ ասպարեզում։ Խաղողի արտադրության և վաճառքի պլանները չկատարելու համար պլենումում շատ տեղին քննադատվեց նաև մեր շրջանը։ Եթե կուզեք իմանալ, այժմ իրոք, մեր գլխավոր խնդիրը այգեգործության զարգացումն է։ Մեզ բնավ չի բավարարում խաղողի և պտղատու այգիների բերքատվության ներկա մակարդակը (1974 թ. հեկտարից ստացվել է 32 ցենտներ խաղող, 9,9 ցենտներ պտուղ)։

Այգեգործությունը մեր շրջանի էկոնոմիկայի առաջատար ճյուղն է, սակայն դրա զարգացման հնարավորությունները և ռեզերվները վատ ենք օգտագործում։ Ցածր բերքատվության հիմնական պատճառը այգիների ոչ լիարժեքությունն է։ Չնայած անցած տարիներին կատարած որոշ աշխատանքին (անդալիս, վերակառուցում, լրացումներ), այնուամենայնիվ, խաղողի այգիների նոսրությունը հասնում է 19,4, պտղատու այգիներինը՝ 20,9 տոկոսի։ Դե, հիմա եկեք հաշվենք, թե որքան այգի է պակասում...

Արտադրության ետ մնալու պատճառը այգիների մշակության մեքենայացման ցածր աստիճանն է։ Պլանների թերակատարման վրա բացասաբար է ազդում և այն, որ առանձին տնտեսություններ դանդաղ են վերականգնում խաղողի քանդած այգիները։

Լուրջ անելիքներ ունենք նաև անասնապահության ասպարեզում։ Մեզ շատ է անհանգստացնում ստերջության բարձր տոկոսը։ Բնավ չի կարելի նորմալ համարել, երբ 1974 թ. հարյուր կովից Թղիթի կոլտնտեսությունն ստացել է 68, Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումը, Եղվարդի և Քանաքեռավանի սովխոզները՝ 73—77 հորթ։ Առանձին տնտեսություններում խիստ ցածր է մթերատվությունը, դեռ ավելին, Քարաշամբում և Արագյուղում, նախորդ տարիների համեմատությամբ, իջել է կովերի կաթնատվությունը։ Գոմերի պակասի պատճառով հնարավոր չէ ավելացնել անասունների գլխաքանակը։ Այսօրվա վիճակով մոտ 400 գլուխ խոշոր եղջերավոր անասուն պահվում է ոչ հարմարավետ շենքերում։ Մի շարք տնտեսություններ չունեն ամառային արոտավայ-



րեր, իսկ Քասախի սովխոզը զուրկ է խոտհարքից և անասունները պահում է մյուս տնտեսությունների հաշվին։ Նպատակահարմար է Քասախ գետի ձախափնյա, Արա լեռան հարավ-արևելյան ստորոտի արոտավայրերը, որոնք չեն օգտագործվում հարևան շրջանների կողմից, հատկացնել մեր շրջանի տնտեսություններին։ Այդ գործում մենք ակնկալում ենք հանրապետության համապատասխան մարմինների աջակցությունը։

Երիտասարդությանը գյուղատնտեսական արտադրության հետ կապելու նպատակով հարկավոր է առաջիկայում բնակարանային շինարարություն ծավալել նաև գյուղերում։ Գյուղմինիստրությունը պետք է օգնի մեզ՝ բոլոր բնակավայրերում արտադրության մարդկանց համար ստեղծելու աշխատանքի և ապրելու անհրաժեշտ պայմաններ։

Մեր շրջանի աշխատավորական կոլեկտիվները ոգևորությամբ ընդունեցին «Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը։ Հանրապետության համար պատմական նշանակություն ունեցող այդ միջոցառումը մեծապես կնպաստի նաև մեր շրջանի զարգացման հեռանկարային խնդիրների լուծմանը։ Գալիք՝ տասներորդ հնգամյակում շրջանի էկոնոմիկան նոր վերելք կապրի։

Նոր հնգամյակում գյուղատնտեսության առաջատար ու վճռական ճյուղը դարձյալ մնալու է այգեգործությունը։ Հիմնական ուշադրությունը կնվիրվի խաղողի ու պտղի այգիների վերակառուցմանը և լիարժեքության բարձրացմանը։ Տնկումների ու լրացումների միջոցով կվերակառուցենք 200 հեկտար խաղողի և նույնքան պտղատու այգի։ Ընդ որում, վերակառուցումը հիմնականում կատարվելու է նոր, արժեքավոր և բարձր բերքատու սորտերով, ինչպիսիք են ռքածիթելին, գառան դմակը, արենին։ Կհիմնվեն տանձենու և խնձորենու ցրտադիմացկուն սորտերի այգիներ։

Հաշվի առնելով, որ առաջիկա հնգամյակում մեծ չափով ավելանալու է խաղողի և պտուղների արտադրությունը, նախատեսել ենք 270-ական տոննա տարողությամբ մրգերի պահպանման սառնարաններ կառուցել Նոր Երզնկայի, Զովունիի, Պռոշյանի և Քասախի սովխոզներում։

Նկատելիորեն կզարգանա անասնապահությունը։ Նախատեսվում է խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացնել 11 (այդ թվում կովերինը՝ 20), հասակավոր թռչուններինը՝ 21, ոչխարներինը՝ 4,3 տոկոսով։ Կամրապնդվի հանրային հոտի կերի բազան. ցանովի խոտաբույսերի ցանքատարածությունը կընդարձակվի 20—21, հյութալի կերինը՝ 10—15 տոկոսով։ Կիրականացվեն անասնապահական մթերքների ավելացման և հոտի ցեղայնության բարելավման միջոցառումներ. կմեծանա Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկայի կարողությունը և այժմյան 26 մլն-ի փոխարեն այն տարեկան կարտադրի 334 մլն հատ ձու, երկու անգամ կավելացվի մսի արտադրությունը։ 1976 թ. կավարտվի Քարաշամբի համալիրի կառուցումը և այն տարեկան կարտադրի 4.500—5.000 տոննա տավարի միս։ Շրջանում կստեղծվեն նաև էգ մատղաշների աճեցման և մեղվաբուծական տնտեսություններ։

Տասներորդ հնգամյակում հիմնական շեշտը դրվելու է արդյունաբերական ձեռնարկությունների կարողությունների մեծացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա. համախառն արտադրանքի տարեկան աճը կկազմի 50—60 տոկոս, իսկ ծավալը 1980 թ. կհասնի ավելի քան 70 մլն ռուբլու։

Հողերի ոռոգումը լուրջ պրոբլեմ է մեր շրջանի համար. հողատարածությունների մոտ 30 տոկոսը անջրդի է։ Միայն 1975 թ. ջրաշինարարական աշխատանքների միջոցով 1.000 հեկտար հողատարածություն կդառնա ջրովի։ Հաջորդ տարին կարելի է ևս 500 հեկտար ընդգրկել ոռոգման ցանցի մեջ։ Դրա համար կպահանջվեն լրացուցիչ գումարներ։ Կարծում ենք հանրապետության գյուղատնտեսության ու ջրային տնտեսության և մելիորացիայի մինիստրությունները կօգնեն մեզ՝ լուծելու այդ պրոբլեմները։

Առաջիկա հնգամյակում էականորեն կբարելավվեն աշխատավորների



digitised by A.R.A.R.@

կյանքի նյութական պայմանները, կբարձրանա նրանց կուլտուր-կենցաղային սպասարկման մակարդակը, հաճելի տեսք կստանան բնակավայրերը։

Կբարեկարգվի ու թևերը կտարածի շրջկենտրոնը՝ Եղվարդը, լիովին կձևավորվի նրա նոր թաղամասը։ Տասներորդ հնգամյակի վերջում Եղվարդը կդառնա ավելի քան 10 հազար բնակիչ ունեցող քաղաքատիպ ավան՝ կուլտուրայի և կրթական բազմաթիվ օջախներով։ 1976—1980 թթ. այստեղ կկառուցվեն ու շահագործման կհանձնվեն 600 տեղանոց կինոթատրոնի, հինգհարկանի հյուրանոցի, 150 տեղանոց ռեստորանի, մասնագիտացված նորատիպ խանութի, կապի հանգույցի բարետես շենքերը։ Լավ նվեր կստանան մատաղ սերունդը, երիտասարդությունը. կբացվեն 1.150 տեղանոց դպրոցը, պրոֆտեխնիկական ուսումնարանը, երիտասարդական սրճարանը, սպորտային համալիրը, կստեղծվի զբոսայգի՝ ջրավազանով և այլն։ Կծավալվի նաև բնակարանային շինարարությունը. կկառուցվեն ավելի քան 20 հազար քմ մակերեսով բազմահարկ բնակելի տներ։

Փոքր ավանը կդառնա շրջանի խոշոր բնակավայրերից մեկը՝ իր հասարակական ու բնակելի շենքերով։ Արագորեն կաճեն ու ավելի կգեղեցկանան Նոր Հաճըն և Լուսակերտ ավանները։ Նոր Հաճընի բնակչությունը կավելանա երեք անգամ և 1980 թ. կհասնի 13—15 հազարի։ Այստեղ շահագործման կհանձնվեն ավելի քան 40 հազար քմ մակերեսով բնակելի տներ, կուլտուրայի նոր օջախներ։ Եկող հնգամյակի վերջում Լուսակերտը կունենա 5—6 հազար բնակիչ։

Տասներորդ հնգամյակում շրջանում շատ բան կարվի բնակչության սպասարկումը և երեխաների կրթության գործը արմատապես բարելավելու համար։ Մեծ չափերով կընդլայնվի հանրակրթական դպրոցների և նախադպրոցական հիմնարկությունների ցանցը։ Նոր Գեղի, Լուսակերտ, Քանաքեռավան, Պռոշյան, Նոր Երզնկա ավաններում կկառուցվեն կենցաղ-սպասարկման տաղավարներ. Պռոշյանի սովխոզում, Քանաքեռավանում, Մրգաշենում և Նոր Գեղիում կստեղծվեն առևտրի կենտրոններ։ Մշակույթի նոր շենքեր կհառնեն Մրգաշենում և Նոր Երզնկայում։ Քարաշամբի համալիրը երկաթուղով կկապվի Երևան—Զարենցավան գծին։ Առաջիկա հինգ տարում բնական գազը մուտք կգործի բոլոր բնակավայրերը։ Նախատեսված է Արզնիի ձորիափին հիմնել մի շարք առողջարաններ, որտեղ ամեն ամիս կբուժվի 1.500 մարդ։

Թվարկածս բնավ ոչ լրիվ ցանկն է այն վերափոխումների, որ կատարվելու են գալիք՝ տասներորդ հնգամյակում։

Հարցազրույցը վարեց ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆԸ

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# Ե՛Վ ՔԱՆԱԿ, Ե՛Վ ՈՐԱԿ

Բ. Ա. ՓՈՐՍՈՒՂՅԱՆ

Մեր ԵՐԿՐՈՒՄ ՎԻԹԽԱՐԻ ՄԻՋՈՑՆԵՐ են հատկացվում թեթև արդյունաբերության հիմնական ճյուղերից մեկի՝ տեքստիլ արդյունաբերության և, հատկապես, տրիկոտաժի արտադրության զարգացմանը, որի նշանակությունը մեծ է բնակչության լայն սպառման առարկաներով ապահովելու գործում։ ՍՍՀՄ-ում 1974 թ., նախորդ տարվա համեմատությամբ, ավելի է արտադրվել 26 մլն հատ տրիկոտաժեղեն։ Թեթև արդյունաբերության այդ կարևոր ճյուղը լայնորեն զարգանում է նաև մեր հանրապետությունում։

Վերջին ժամանակաշրջանում հանրապետությունում կառուցվել է 14 ֆաբրիկա, որոնցից մի քանիսը, իբրև առաջնակարգ ձեռնարկություններ, ճանաչվել են ողջ երկրում։ Ներկայումս Սովետական Հայաստանի տրիկոտաժի ձեռնարկություններում աշխատում է ավելի քան 18 հազար մարդ՝ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմում աշխատողների մեկ երրորդը։ 1973 թ. մինիստրության տրիկոտաժի ձեռնարկություններն արտադրել են 41,3 մլն հատ տրիկոտաժե սպիտակեղեն, 11,7 մլն հատ տրիկոտաժե վերնազգեստ, 42,3 մլն զույգ գուլպեղեն և 9,3 մլն զույգ ձեռնոցներ։ Սովետական Միության ընդհանուր հաշվեկշռում մեր հանրապետությունը տրիկոտաժե սպիտակեղենի արտադրությամբ գրավում է 4-րդ, տրիկոտաժե վերնազգեստի՝ 5-րդ և գուլպեղենի արտադրությամբ՝ 7-րդ տեղը։ Հայաստանը տրիկոտաժի բարձր զարգացած արդյունաբերության կենտրոններից է և երկրի տրիկոտաժեղենի խոշոր մատակարարը։ Հայաստանի մակնիշով տրիկոտաժեղենը առաքվում է երկրի շատ շրջաններ և մասամբ՝ սոցիալիստական երկրներ։

Ներկայումս մեծ աշխատանք է ծավալվել հանրապետության տրիկոտաժի ձեռնարկություններն արմատապես վերազինելու նպատակով։ Միայն իններորդ հնգամյակի անցած տարիներին ձեռնարկություններում տեղադրվել է հյուսելու-կարելու և ներկման-վերամշակման 2.500-ից ավելի ժամանակակից բարձր արտադրողական սարքավորում։ Տրիկոտաժի արդյունաբերությունը դարձել է հեռանկարային, շահութաբեր և արագ զարգացող ճյուղ, նրա հետագա առաջընթացը պահանջում է լուծել մի շարք էական հարցեր։ Ամենակարևորը, իհարկե, հումքի հարցն է։ Ֆաբրիկաների արտադրական թերությունների մեծ մասը հատկապես պարապուրդները, արտադրանքի ոչ ռիթմիկ թողարկումը, մոդելների և գույների, արտիկուլների չափսերի խախտումները հիմնականում հետևանք են այն բանի, որ ժամանակին ու լրիվ չի մատակարարվում հումքը, երբեմն ցածր է դրա որակը։

Հանրապետության տրիկոտաժի ձեռնարկություններին բամբակե մանվածք է մատակարարում Լենինականի Ս. Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկան, որի կարողությունը (իլիկների քանակով) այժմ արդեն անբավարար է։ Իսկ եթե հաշվի առնենք 1976—1980 թթ. հեռանկարը, ապա այդ անհամապատասխանությունն ավելի զգալի կդառնա։

Այդ առանձնապես վերաբերում է բարձր համարների սանրազտված մանվածքին։ 1975 թ. պլանի համաձայն, Լենինականի մանվածքային ֆաբրիկան



digitised by A.R.A.R.@

պետք է արտադրի 4.000 տոննա կարդային սովորական և 2.000 տոննա սանրագզվածքային մանվածք։ Թերևս կարդային մանվածքի թողարկումը կբավարարի պահանջարկը, ինչ վերաբերում է սանրագզվածքայինին, ապա այստեղ անպայման խզում կառաջանա։ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության նախագծային հատուկ կոնստրուկտորական բյուրոյի տնտեսական հետազոտությունների բաժնի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ տասներորդ հնգամյակում սանրագզվածքային մանվածքի պակասը կկազմի 2.000 տոննա։

Տրիկոտաժի արդյունաբերությունը մանվածքով լիովին ապահովելու համար Պեմզաշենում կառուցվում է մանվածքային-ոլորման ֆաբրիկա, որը պետք է շահագործման հանձնվի 1975 թ. վերջերին։ Լենինականի մանվածքային ֆաբրիկայից Պեմզաշեն կփոխադրվի ոլորման արտադրամասի սարքավորումը, իսկ ազատված տարածությունը կհատկացվի մանվածքային արտադրությանը։ Ֆաբրիկաների այսպիսի վերակառուցումը միանգամայն նպատակահարմար է, այն հնարավորություն կընձեռի առանց խոշոր ծախսումների բարելավել տրիկոտաժի ձեռնարկությունների աճող պահանջները։

Հանրապետության տրիկոտաժի ձեռնարկությունների մաքուր և կիսաբրդյա մանվածքի տարեկան պահանջը 1.500 տոննա է։ Բրդյա մանվածքի այդ ծավալի հինգերորդ մասն ապահովում է Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատը, իսկ մնացածն ստացվում է այլ հանրապետություններից։ Տրիկոտաժե վերնազգեստի արտադրության շեշտակի աճից և Երևանի Ա. Մյասնիկյանի անվան տրիկոտաժի արտադրական միավորման գլխամասային ֆաբրիկայի վերակառուցումից հետո (որն Անդրկովկասում տրիկոտաժե վերնազգեստ արտադրող ամենախոշոր ձեռնարկությունն է), մաքուր և կիսաբրդյա սանրագզված մանվածքի պահանջարկը խիստ մեծանում է։ Հաշվի առնելով նաև այն, որ Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատը ևս ունի մանվածքի մեծ պահանջ, անհրաժեշտ է այժմյանից մտահոգվել մանվածք թողարկող նոր կարողությունների ստեղծման հարցով։

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ կուսակցության XXIV համագումարում նշեց. «Մեր ժողովրդական տնտեսության հնարավորությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ արտադրության արդյունավետության բարձրացման և տնտեսական աճի արագացման ռեզերվներ մեզանում կան, և դրանք միանգամայն նշանակալից են... Ես նկատի ունեմ աշխատաժամանակի կորուստների վերացումը, կադրերի հոսունության կրճատումը, աշխատանքում եղած անհամաչափության, սարքավորումների պարապուրդների վերացումը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 84)։

Մեր հանրապետությունում տրիկոտաժի արտադրության հետագա զարգացման կարևոր ռեզերվը ձեռնարկություններում աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն է, արտադրության տեխնոլոգիայի կատարելագործումը։ Դա մեծ չափով կնպաստի աշխատանքի արտադրողականության ու արտադրանքի որակի բարձրացմանը, հումքի խնայողությանը։

Մեր հետազոտությունները ցույց են տվել, որ գրեթե բոլոր ֆաբրիկաներում գոյություն ունի խզում լիովին մեքենայացված հիմնական տեխնոլոգիական պրոցեսների և օժանդակ աշխատանքների միջև։ Հատուկ նախագծային կոնստրուկտորական բյուրոյի հաշվարկների համաձայն, օժանդակ աշխատանքների մեքենայացման մակարդակը ճյուղում կազմում է 13,5 տոկոս, այն դեպքում, երբ Միության գործարաններում այն 52 տոկոս է։ 1972 թ. տվյալներով հանրապետության տրիկոտաժի ձեռնարկություններում 14.792 բանվորներից 5.227-ը կամ 35,3 տոկոսը օժանդակ աշխատանքներ են կատարում։

Այստեղից էլ՝ արտադրության կոմպլեքսային մեքենայացման նախագծերի մշակման և արմատավորման անհրաժեշտությունը, ինչպես դա արվել է Մերձմոսկովյան Կունցևոյի տրիկոտաժի ֆաբրիկայում, որտեղ օժանդակ գործողությունների մեծ մասը և հումքի ու կիսաֆաբրիկատի ընդունման, փոխադրման բոլոր աշխատանքները մեքենայացված են։



Մեզ մոտ կոմպլեքսային մեքենայացման այդպիսի առաջին նախագիծը մշակված է Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի համար, որտեղ մանվածքի և կիսաֆաբրիկատի ընդունման, բեռնաթափման, փոխադրման և տեխնոլոգիական սարքավորումների վերանորոգման աշխատանքները դեռևս կատարվում են ձեռքով։ Օժանդակ և փոխադրման 36 գործողություններից միայն վեցն են (16,6 տոկոս) մեքենայացված։

Կոնստրուկտորական բյուրոյի մշակած նախագծով ֆաբրիկայի աշխատատար պրոցեսները մեքենայացվում են։ Նախահաշվի համաձայն, ծախսերը կկազմեն 28,5 հազար ռուբլի, որը կհատուցվի կես տարում։ Տարեկան տնտեսական օգուտը կկազմի 133 հազար ռուբլի, ըստ որում օժանդակ բանվորների թիվը կկրճատվի 44-ով։ Նրանք կաշխատեն հիմնական արտադրամասերում։ (Ցավոք, ֆաբրիկայում այդ նախագծի իրագործումը դանդաղ է ընթանում)։ Եթե առաջիկա մեկ-երկու տարում հաջողվի կոմպլեքսային մեքենայացման նախագծեր մշակել բոլոր ֆաբրիկաների համար և գլխավորը՝ իրագործել դրանք, ապա ճյուղում արտադրության արդյունավետությունը, առանց լրացուցիչ խոշոր ծախսերի, կբարձրանա 1,2 անգամ։

ՈՉ ՊԱԿԱՍ ԿԱՐԵՎՈՐ Է ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ բարձրացումը, որը ճյուղում բնութագրվում է հետևյալ տվյալներով.

| Ցուցանիշները | Չափի միավորը | 1970 թ. | 1973 թ. | 1973 թ. տոկոսներով՝ 1970 թ. նկատմամբ |
|---|---|---|---|---|
| Հիմնական արդյունաբերական արտադրական ֆոնդերը | հազար ռուբլի | 25296 | 37334 | 147,5 |
| Համախառն արտադրանքը 1967 թ. հուլիսի 1-ի գներով | մլն ռուբլի | 125,4 | 143,9 | 114,7 |
| Արտադրական անձնակազմի թվաքանակը | մարդ | 16205 | 17403 | 107,4 |
| Ֆոնդազինվածությունը (մեկ բանվորի հաշվով) | ռուբլի | 1560 | 2139 | 137,1 |
| Էլեկտրազինվածությունը | կվտ/ժամ | 1136 | 1297 | 114,1 |
| Աշխատանքի արտադրողականությունը | ռուբլի | 7740 | 8266 | 106,7 |
| Ֆոնդահատույցը | ռուբլի | 4,96 | 3,85 | 77,6 |

Եվ այսպես, այն դեպքում, երբ 1970—1974 թթ. տրիկոտաժի արտադրության ձեռնարկություններում ավելացել են՝ հիմնական արդյունաբերական-արտադրական ֆոնդերը 47,5, ֆոնդազինվածությունը՝ 37,1 և էլեկտրազինվածությունը՝ 14,1 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունն այդ նույն ժամանակաշրջանում բարձրացել է ընդամենը 6,7 տոկոսով։

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը միանգամայն տեղին նշեց, որ հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում թերակատարվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման՝ հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքը։ Այս առումով վիճակն առավելապես տագնապալի է տրիկոտաժի արտադրության ասպարեզում։ Այստեղ մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը 1973 թ., նախորդ տարվա համեմատությամբ, իջել է 255 ռուբլով։ Այդ նույն ժամանակաշրջանում մի շարք ձեռնարկություններ չեն կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանները։ Դրանց թվին են պատկանում Սպիտակի, Երևանի № 1, Լենինականի և Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկաները։ Վիճակը գրեթե նույնն էր նաև անցյալ տարի։



digitised by A.R.A.R.@

ճյուղի կառավարման կառուցվածքի բարելավման նպատակով որոշվել է «Անուշ» միավորման բազայի վրա մեզ մոտ կազմակերպել մասնագիտացված չորս միավորում՝ ըստ թողարկվող արտադրանքի. տրիկոտաժե վերնազգեստների, տրիկոտաժե սպիտակեղենի, գուլպեղենի և ձեռնոցների: Երկու խոշորագույն ձեռնարկություններ՝ Կիրովականի և Լենինականի ֆաբրիկաներն իրենց մասնաճյուղերով, կդառնան ինքնուրույն արտադրամիավորումներ:

Հանրապետության տրիկոտաժի արդյունաբերության կազմակերպման այս սխեմայի մշակման հիմքում ընկած է կառավարման նպատակահարմարության սկզբունքը, որը թույլ է տալիս արտադրամիավորումներում և խոշորացված ձեռնարկություններում ռացիոնալ զուգակցել նոր ստեղծվող ձեռնարկությունների մասնագիտացումը, նրանց տերիտորիալ տեղաբաշխումը, ղեկավար կադրերի առկա կազմը, ինչպես նաև խոշորացված ձեռնարկությունների իրավունքների և իրավական ինքնուրույնության պահպանումը, որը մեր պայմաններում վճռական նշանակություն ունի տնտեսական գործունեության ընթացքում ծագող բազմաթիվ հարցեր օպերատիվ և ժամանակին լուծելու համար:

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը իրավացիորեն նշեց, որ անհրաժեշտ է վերացնել զանազան գերատեսչությունների և կազմակերպությունների ավելորդ ու բազմաքանակ մանր արտադրությունները և արտադրամասերը, որոնք ապօրինի ստեղծվում են պլանային ու տնտեսական մարմինների թողտվությամբ:

Հայտնի է, որ մեր հանրապետությունում, ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրությունից բացի, տրիկոտաժեղենի արտադրությամբ զբաղվում են հանրապետության տեղական արդյունաբերության և բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունների, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի կոմիտեի, խուլ-համրերի միավորման և երգչախմբային ընկերության ձեռնարկությունները: Այդ կազմակերպությունների արտադրանքը (որը կազմում է թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների թողարկած տրիկոտաժեղենի 4—5 տոկոսը), միօրինակ է, ցածրորակ, անհրապույր, վատ հարդարված, անճաշակ փաթեթավորված: Պատճառն այն է, որ այս ձեռնարկությունների ինժեներա-տեխնիկական հարցերը հաճախ լուծում են այնպիսի մարդիկ, որոնք ոչ մի կապ չունեն տրիկոտաժի արտադրության հետ: Այսպես, երկար տարիներ տեղական արդյունաբերության Երևանի «Տնայնագործ» կոմբինատի տրիկոտաժի մասնաճյուղը ղեկավարում էր մասնագիտությամբ կոշկագործ, վարորդի էր վստահվել ներկման արտադրամասը, մանվածքային և կարի արտադրամասերը ղեկավարում էին նույնպես պատահական անձինք:

«Հայհագուստ»-ի ղեկավարությունն ամեն տարի բարձրացնում է հիշյալ ձեռնարկությունների տրիկոտաժեղենի արտադրության աննպատակահարմարության հարցը, քանի որ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների թողարկած տրիկոտաժեղենը լիովին բավարարում է ինչպես մեր, այնպես էլ եղբայրական մյուս հանրապետությունների ներկայացրած պահանջը: Եվ մեզ թվում է, որ վաղուց ժամանակն է արմատապես լուծելու այս հարցը:

Տրիկոտաժի արտադրության հետագա առաջընթացը, արտադրանքի որակի բարձրացումը ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող խնդիր է, որի լուծմամբ շահագրգռված է ողջ բնակչությունը:

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ՆԱԽԱԳԾԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

**Լ. Ա. ԵՐԶՆԿՅԱՆ**
ՀՍՍՀ Մինիստրների սովետի պետշինի
նախագահի առաջին տեղակալ

ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ԱՄԵՆ ՏԱՐԻ վիթխարի միջոցներ են հատկացվում շինարարությանը: Այդ պայմաններում հույժ կարևոր է կապիտալ ներդրումների բանիմաց օգտագործումը: Ամենից առաջ, անհրաժեշտ է կառույցները ժամանակին ապահովել տեխնիկական փաստաթղթերով, հաշվի առնել գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, որոնք ապահովում են շինարարության արժեքի զգալի իջեցում, աշխատանքի արտադրողականության արագ աճ: Վերջին տարիներին ընդունվել և կենսագործվում են մի շարք կարևոր որոշումներ, որոնց շնորհիվ նկատելի դրական տեղաշարժ են կատարել հանրապետության առաջատար նախագծային ինստիտուտները:

Տեխնիկական առաջավոր լուծումների շնորհիվ նախագծային կազմակերպությունները ստեղծել են մի շարք բարձրորակ նախագծեր, բարձրացել է դրանց տեխնիկական մակարդակը: Շատ բան է արվել բարձր արտադրողական սարքավորումների, հատակագծման ծավալային առաջավոր լուծումների, առավել արդյունավետ նյութերի, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների կիրառման ասպարեզներում: Հիշարժան են սովետական ճարտարապետության նվաճումների համամիութենական ստուգատեսում երկրորդ մրցանակի արժանացած «Հրազդան» մարզադաշտը, մայրաքաղաքի «Ռոսիա» կինոթատրոնը, երիտասարդության պալատը, Երևանի ու Սևանի գլխավոր հատակագծերը: Երևանի կենտրոնի կառուցապատման նախագիծը համամիութենական մրցույթում շահեց առաջին մրցանակը: ԺՏՆՑ-ում ցուցադրված էին 129 սերիայի խոշորապանել բնակելի տների որակյալ նախագծեր, որոնց հեղինակները պարգևատրվեցին արծաթե և բրոնզե մեդալներով:

ՆԱԽԱԳԾԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ, որոշ հաջողությունների զուգընթաց, կան զգալի թերություններ: Այդ կազմակերպությունները դեռևս շատ անելիքներ ունեն՝ կենսագործելու համար կուսակցության ու կառավարության առաջադրանքները: Նախագծային գործի պատշաճ կազմակերպմանը մեծ չափով խանգարում է մեր հանրապետությունում մանր ու սակավազոր նախագծային ինստիտուտների, դրանց մասնաճյուղերի, նախագծային-կոնստրուկտորական բյուրոների առատությունը: Կազմակերպվել են զուգահեռ գործող մանր հիմնարկություններ, որոնք մեծ մասամբ չեն նպաստում տեխնիկական փաստաթղթերի արմատական բարելավմանը և չեն ապահովում դրանց ժամանակին ավարտումը: Այդ կազմակերպությունների նախագծերը ցածրորակ են, դրանք հաճախ խախտում են նախագծման առկա նորմաներն ու ժամկետները: Քիչ չեն դեպքերը, երբ ճիշտ չի որոշվում նախագծվող օբյեկտների նախահաշվային արժեքը, որը և կազմալուծում է կապի-



digitised by A.R.A.R.@

յում են, որ որոշ դեպքերում շինկազմակերպությունները են նախագծողներին թելադրում իրենց տեխնիկական քաղաքականությունը՝ խոչընդոտելով առաջավոր ու խնայողական լուծումների և կառուցվածքների ներդրմանը։ Սրան ևս պետք է վերջ տալ։ Անհրաժեշտ է շինարարության մեջ օգտագործել առաջավորն ու նորը, անկախ շինկազմակերպության ցանկությունից, ապահովել ձեռնարկության ճարտարապետական-հատակագծման լուծումների, շինկառուցվածքների ու նյութերի ճիշտ ընտրությունը։

Շինարարության մեծ ծավալները նախագծային կազմակերպությունների առջև խնդիր են դրել՝ առավելագույնս տիպայնացնել շինկառուցվածքները։ Ցավոք, արդյունաբերական օբյեկտների մեծ մասը դեռևս կառուցվում է անհատական նախագծերով, որոնցում անբավարար է տիպային կառուցվածքների ու դետալների կիրառումը։ Տիպային նախագծերը շահեկանորեն տարբերվում են անհատականներից ո՛չ միայն տեխնիկական լուծումներով, այլև տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով։ Հաշվի առնելով դրանց դերը շինարարության արժեքի իջեցման և որակի բարձրացման գործում, նախագծային կազմակերպությունները պետք է մեծ ուշադրություն հատկացնեն տիպային նախագծման հարցերին։

Նախագծերն անպայման պետք է պարունակեն տեղական շինանյութերի օգտագործման տարբերակները՝ Հայաստանի թեթև լցանյութերից պատրաստված կառուցվածքների բազայի վրա։ Այս հանգամանքը հնարավորություն կընձեռի իջեցնելու հավաքովի կառուցվածքների քաշը։ Աններելի է, որ մենք մինչև այժմ կառուցվածքներում չենք կիրառում ժողովրդա-տնտեսական վիթխարի նշանակություն ունեցող այնպիսի հիանալի շինանյութ, ինչպիսին հայկական պեռլիտն է...

Անհրաժեշտ է տիպային առավելագույն կրճատմամբ հասնել նախագծային լուծումների միատարրության։ Դրանով վերջ կտրվի այն արատավոր պրակտիկային, երբ իրար կողքի կառուցվում են տիպային նախագծերով մի քանի օբյեկտներ՝ կառուցվածքային տարբեր լուծումներով, որը և արհեստականորեն դժվարացնում է շինարարական դետալների պատրաստումը։ Այժմ ՍՍՀՄ պետշինն ուսումնասիրում է միութենական բոլոր հանրապետություններում տիպային նախագծերի կազմման հատուկ ինստիտուտներ ստեղծելու հարցը, որի լուծումը, անշուշտ, կբարելավի տիպային նախագծման գործը։

Արդյունաբերական օբյեկտների նախագծման ճիշտ լուծումների կարելի է հասնել միայն առաջավոր ձեռնարկությունների փորձի խոր ուսումնասիրմամբ և գիտահետազոտական աշխատանքների արդյունքների կիրառմամբ։ Անբավարար է հանրապետության գիտահետազոտական և նախագծային ինստիտուտների կապը։ Դրանց համագործակցությունը զգալիորեն կբարելավի նախագծման որակը։ Նախագծային շատ կազմակերպությունների գործունեության լուրջ թերություններից է արդյունաբերության տարբեր ճյուղերում սեփական տեխնոլոգիայով խմբերի բացակայությունը, որի հետևանքով տեխնոլոգիական մասը հաճախ նախագծվում է Հայաստանից դուրս։ Նման իրավիճակը խանգարում է նախագծերի ժամանակին ավարտմանը և հաճախ հանգեցնում լուրջ տարաձայնությունների։ Պետք է հասնել այն բանին, որ նախագծվող աշխատանքների հիմնական մասը կատարվի մեր հանրապետությունում։

ԲՆԱԿԵԼԻ ՇԵՆՔԵՐԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՏԵՍՔԸ հաճախ միօրինակ է, անհաճո։ Ցածրորակ են նախագծված հատկապես տուֆաբլոկով կառուցված մի քանի բնակելի տներ, որոնք չեն ներդաշնակում մեր քաղաքի գեղեցկությանը։ Այս առումով խիստ կարևոր է միաձույլ երկաթ-բետոնի օգտագործումը։ Միաձույլ բետոնից բնակելի և քաղաքացիական կառույցների շինարարությունն անհամեմատ մեծ հնարավորություններ է ընձեռում ճարտարապետական ժամանակակից լուծումների համար։ Գաղտնիք չէ, որ հայտնվելով տիպային միօրինակ նախագծերով կառուցված նոր թաղամասերում, երբեմն չես կարող որոշել որ քաղաքում ես՝ Մոսկվայում, Կիևում, թե՞ Երևանում։



Բացի այդ միաձույլ երկաթ-բետոնն ավելի լավ է ապահովում կառույցների սեյսմադիմացկունությունը։ ՍՍՀՄ պետշինի որոշմամբ, նախատեսված է երկրի տարբեր շրջանների, ամենից առաջ Միջին Ասիայի և Անդրկովկասի՝ բարձր սեյսմիկություն և կլիմայական առավել բարենպաստ պայմաններ ունեցող հանրապետություններում բնակելի շենքերի տիպային նախագծերը կազմելիս լայնորեն կիրառել միաձույլ երկաթ-բետոնը։ Պետք է խոստովանել, որ այս մարզում մեր հանրապետությունում տարվող աշխատանքը տակավին անբավարար է։

Հարկ է նշել նաև շինանյութերի ծախսի կրճատման մեծ հնարավորությունները՝ տեխնոլոգիական սարքավորումները բաց հրապարակներում տեղավորելու միջոցով. նախագծողները պետք է հնարավորության սահմաններում պայմաններ ընձեռեն դրա համար։ Իհարկե, այս դեպքում տեխնոլոգիական սարքավորումների գործարանները ևս պետք է այնպես անեն, որ թողարկված արտադրանքը հարմարեցվի բացօթյա աշխատանքներին։ Միշտ չէ, որ արդյունաբերական ձեռնարկությունների նախագծերում հաշվի են առնվում հայրենական և արտասահմանյան գիտության ու տեխնիկայի նվաճումները. հաճախ նախատեսվում են տեխնոլոգիական հնացած պրոցեսներ ու սարքավորումներ, անբավարար ուշադրություն է նվիրվում արտադրության մեքենայացմանը։ Այսպես, օրինակ, Թալինի շրջանի խոտալյուրի մասնագիտացված սովխոզի արտադրաշենքի տեխնիկական աշխատանքային նախագիծը (որ մշակել է «Հայպետգյուղնախագիծը») չհաստատվեց տեխնիկա-տնտեսական ցածր ցուցանիշների պատճառով։ Նույն նկատառումով հավանության չարժանացավ Երևանի «Ֆերրիտ» գործարանի վերակառուցման ու ընդլայնման տեխնիկական նախագիծը, որը պատրաստել էր «Գիպրոէներգոպրոմ» նախագծային ինստիտուտի երևանյան մասնաճյուղը։

Նախագծերում հաճախ տեղ են գտնում շինհրապարակների ու ծավալների ավելորդ ռեզերվներ։ Անհանդուրժելի է օժանդակ արտադրամասերի ու ձեռնարկությունների հզորությունների և նոմենկլատուրայի մեծացումը, եթե այն չի բխում հիմնական արտադրության պահանջներից։ Հրազդանի շրջանի Մեղրաձոր գյուղի հանքային ջրի գործարանի տեխնիկական նախագիծը (որ իրականացրել էր «Հայարդնախագիծը») չհաստատվեց, քանի որ անհիմն մեծացվել էր գործարանի հզորությունը և տեխնիկապես ու տնտեսապես հիմնավորված չէր շինհրապարակի ընտրությունը։ Մերժվեց 280 տեղանոց պանսիոնատի (Նորքում) տեխնիկական աշխատանքային նախագիծը («Հայպետնախագիծ» ինստիտուտ)՝ նախագծման նորմաների, հիմնական և օժանդակ շինհրապարակների չափերի խախտման պատճառով։

Նախագծային ինստիտուտները հաճախ անտեսում են մոտակա ձեռնարկությունների հետ նոր կառույցի կոոպերացումը նույնիսկ այն ժամանակ, երբ այդ գործարանները պատկանում են նույն սիստեմին։ Անհրաժեշտ է կոոպերացնել օժանդակ ու կից օբյեկտները ևս, ինչպես ասենք՝ կաթսայատները, գարաժները, վերանորոգման-մեխանիկական արհեստանոցները և այլն։ ՀՍՍՀ առևտրի մինիստրության Ջրբախի արդյունաբերական ապրանքների մեծածախ բազայի նախագծում անտեսվել է ինժեներային սարքավորումների կոոպերացումը։ Նախագծային ինստիտուտների աշխատանքին առաջվա նման խանգարում են նախնական տվյալների ուշացումը պատվիրատուների կողմից, հաջորդ տարվա նախագծային պլանի ուշ վերանայումն ու հաստատումը։ Էական թերություններ կան նախագծային և հետախուզական աշխատանքների պլանավորման, դրանք կապիտալ շինարարության պլանին համապատասխանեցնելու գործում։ Պլանավորող մարմիններն ուշացնում են նախագծային կազմակերպությունների պլանների հաստատումը։ Սխալներից խուսափելու համար պետք է ավելի հանգամանորեն մշակել նախագծման առաջադրանքը՝ ղեկավարվելով ժողտնտեսության համապատասխան ճյուղերի հեռանկարային զարգացման պլանով, հիմնավորելով շինարարության տեղի ընտրությունը, ձեռնարկության հզորությունը և դրա արտադրանքի նոմենկլատուրան։

Հանրապետության բազմաթիվ նախագծային կազմակերպություններում



digitised by A.R.A.R.@

խիստ դանդաղ է կատարելագործվում տեխնոլոգիական նախագծումը: Չափազանց մեծ են աշխատանքային գծագրերի մշակման ու բազմացման ծախսերը: Անբավարար են իրագործվում այդ կազմակերպությունները ժամանակակից սարքավորումներով, հաշվիչ տեխնիկայի միջոցներով զինելու միջոցառումները, որոնք կնպաստեն նախագծման աշխատատարության իջեցմանը: Նախագծային մի շարք կազմակերպություններում վատ է օգտագործվում տեխնիկան, որի պատճառով աշխատակիցների ընդհանուր թիվը պարբերաբար մեծանում է, աճում նախագծային-հետախուզական աշխատանքների բացարձակ և հարաբերական արժեքը:

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԸ ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻ ԻՐ ՄԻ ՇԱՐՔ ՈՐՈՇՈՒՄՆԵՐՈՒՄ, նշելով նախագծա-նախահաշվային գործի լուրջ թերությունները, պարտավորեցրեց մինիստրություններին ու գերատեսչություններին՝ բարձրացնել մշակվող նախագծերի որակը:

Վերը նշված հարցերին հանգամանորեն անդրադարձավ ՀԿԿ Կենտկոմի այս տարվա հունվարյան պլենումը, իրավամբ նշվեց, որ հանրապետության նախագծային կազմակերպություններում առկա թերությունների համար պատասխանատու է նաև Հայկական ՍՍՀ պետշինը: Հիրավի, դեռևս շատ անելիքներ կան նախագծային գործի բարելավման ասպարեզում:

Պետշինը համապատասխան հետևություններ է արել պլենումի քննադատությունից: Ամենից առաջ միջոցներ են ձեռնարկվել՝ կանխելու հնացած նախագծերով շինարարությունը, դրանցում անհրաժեշտ շտկումներ ու փոփոխություններ ժամանակին կատարելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու և տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարելավելու նպատակով: Վճռական պայքար է ծավալվում այնպիսի երևույթների դեմ, երբ նախագծային կամ շինարարական պրակտիկայում օգտագործվում են ծանր, նյութատար ու հնացած կառուցվածքներ. մի հանգամանք, որն առաջացնում է նյութական ռեսուրսների գերածախս, մեծացնում է շինարարության աշխատատարությունը և արժեքը: Նախագծային կազմակերպությունները պետք է գտնեն նյութերի տնտեսման արդյունավետ ուղիներ: Չափազանց կարևոր է արտադրահզորության մեծացումը՝ արտադրության ինտենսիվացման, սարքավորումների մոդեռնացման և գործող ձեռնարկությունների վերակառուցման միջոցով:

Հայաստանի պետշինի ցանցում սահմանվել է նախագծերի ու նախահաշիվների պատշաճ վերահսկողություն, որը գործուն ազդակ է՝ բարձրացնելու նախագծման որակը և արդյունավետ օգտագործելու կապիտալ ներդրումները: Այս առնչությամբ պարբերաբար և հանգամանալի քննարկվում է հանրապետության առաջատար նախագծային կազմակերպությունների աշխատանքը: Վերջին շրջանում նման ստուգումներ են կատարվել «Հայգիպրոսելխոզում», «Գիպրոտորգի» հայկական բաժանմունքում, «Հայարդնախագծում», «Հայպետնախագծում». ընդունվել են համապատասխան որոշումներ, ձեռնարկվել անհրաժեշտ միջոցներ:

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը պետշինի և նախագծային կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ անհապաղ բարելավել նախագծային գործը, նկատի ունենալով նախագծային կազմակերպությունների խոշորացումը, դրանց նյութա-տեխնիկական բազայի ամրապնդումը, զինումը ժամանակակից տեխնիկայով: Հանրապետության նախագծողները պարտավոր են վերացնել առկա թերությունները, ապահովել շինարարության հետագա վերելքը: Նախագծային կազմակերպությունների աշխատանքների կարգավորումը և բարելավումն անհետաձգելի խնդիր է:

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԼԾԱԿՆԵՐԸ

**Ջ. Ս. ԱԼԻԵՎ**
Մեղրիի շրջանի Նյուվադի գյուղի կոլտնտեսության նախագահ, տնտեսագիտության թեկնածու

ՄԵՐ ԵՐԿՐԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ մեջ տեղի են ունենում խոր փոփոխություններ: Ամրապնդվում է նրա նյութատեխնիկական բազան, առավել նպաստավոր պայմաններ են ստեղծվում գյուղատնտեսության մեջ վերարտադրության պրոցեսի համար: «Կուսակցությունը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— կարողացավ գտնել և գործողության մեջ դնել այնպիսի լծակներ, որոնք, ի մի վերցրած, ապահովում են էկոնոմիկայի այդ կարևոր ճյուղի հաստատուն առաջընթացը: Ստեղծված են նրա զարգացումը խթանող տնտեսական պայմաններ: Կատարվում է կոմպլեքսային մեքենայացում, էլեկտրիֆիկացում և քիմիացում: Լայն մասշտաբներով իրականացվում է հողերի մելիորացում: Այժմ գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման մեծ աշխատանք է ծավալվել»:

Կուսակցության մշակած այս միջոցառումները իրականացվում են գյուղատնտեսության մեջ աշխատանքի հասարակական բաժանման խորացման, ագրարային-արդյունաբերական կոոպերացիայի զարգացման, ժողովրդատնտեսական ագրարային-արդյունաբերական կոմպլեքսի ձևավորման պրոցեսում:

Գյուղատնտեսության զարգացման արդի փուլի բնորոշ առանձնահատկություններից մեկը անցումն է արտադրության ինդուստրիալ մեթոդներին: Կոոպերատիվ հիմունքներով ստեղծվող ագրարային-արդյունաբերական խոշոր կոմպլեքսները նոր երևույթ են երկրի գյուղատնտեսության մեջ և, բնականաբար, նման կոմպլեքսներ ստեղծելիս, հանդիպում են մի շարք պրոբլեմներ, որոնց լուծումը պահանջում է ստեղծագործական մոտեցում ո՛չ միայն արտադրության տեխնոլոգիայի, այլև արտադրության կառավարման նկատմամբ:

Հայտնի է, որ նյութական ամուր բազա ունեցող տնտեսությունն անգամ այսօր ի վիճակի չէ միայն իր ուժերով ստեղծել ժամանակակից մեքենայական ամբողջ կոմպլեքսը, որի համար պահանջվում են խոշոր կապիտալ ներդրումներ: Մի քանի տնտեսությունների ջանքերը միավորելով միայն կարելի է ժամանակակից գյուղատնտեսական խոշոր արտադրությունը զինել անհրաժեշտ ամեն բանով:

Ագրարային-արդյունաբերական կոոպերացիայի արագ զարգացման համար կարևորը ո՛չ միայն համապատասխան նյութատեխնիկական բազան է, այլև գյուղատնտեսության, ամենից առաջ միջտնտեսային մասնագիտացման խորացումը: Մասնագիտացումը, որպես աշխատանքի հասարակական զարգացման արտահայտություն, միտում է կատարելագործել արտադրական կառուցվածքը, նպաստում է բնական տնտեսական գործոնների առավելագույն օգտագործմանը:

Հանդիսանալով արտադրության արդյունաբերության բարձրացման գըլխավոր ուղիներից մեկը, միջտնտեսային համակենտրոնացումն ու ագրոար-



digitised by A.R.A.R.@

գյունաբերական ինտեգրացումը միևնույն ժամանակ կարևոր գործոններ են սոցիալական հարցերի լուծման, կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակի բարձրացման ու կատարելագործման, քաղաքի և գյուղի միջև էական տարբերությունների աստիճանական վերացման համար։

Մերձմոսկովյան բանջարաբուծական «Բոլշևիկ» սովխոզում ամեն տարի մեկ ցենտներ բանջարեղենի արտադրության համար կատարվող աշխատանքի ծախսումներն ավելի քան երկու անգամ ցածր են, քան ամբողջ Մոսկվայի մարզում, իսկ այնպիսի տնտեսություններում, ինչպիսիք են «Բելայա դաչա», Մոսսովետի անվան, «Զնամյա Օկտյաբրյա» սովխոզները, որոնք մասնագիտանում են խոզերի բտման ասպարեզում, մեկ ցենտներ քաշաճի համար կատարվող աշխատանքի ծախսումները կազմում են 3—7, իսկ ամբողջ մարզում՝ 14 մարդ-ժամ։

Մեր հանրապետության Շահումյանի շրջանի միջկոլտնտեսային խոզաբուծական ֆաբրիկայում 1974 թ. մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը կազմել է 151 ռուբլի, իսկ հանրապետության կոլտնտեսություններում՝ 205։ Առաջինում մեկ ցենտներ խոզի մսի արտադրության համար աշխատանքային ուղղակի ծախսումները կազմել են 41 մարդ-ժամ, իսկ երկրորդում՝ 73։ Այսպիսով, 1.000 ցենտներ մսի արտադրության համար միայն աշխատանքային ծախսումները միջկոլտնտեսային խոզաբուծական ֆաբրիկայում, կոլտնտեսությունների համեմատությամբ, ավելի քան 30.000 մարդ-ժամ պակաս են եղել։ Հենց մասնագիտացումն է հնարավորություն ընձեռում լավագույն կերպով օգտագործել արտադրության բոլոր վճռական գործոնները, միաժամանակ նախադրյալներ ստեղծում միջտնտեսային արդյունավետ կապերը զարգացնելու համար։

Հարկավոր է նշել, որ մեզ մոտ դեռևս բավարար չափով չեն ուսումնասիրված ժամանակակից պայմաններում արտադրության ներտնտեսային մասնագիտացման պրոբլեմները։ Անհրաժեշտ են գիտական պլանավորման և կառավարման, մասնագիտացման խորացման և համակենտրոնացման ընդլայնման կոնկրետ հարցերի, հրատապ պրոբլեմների տեսական հիմնավորումներ ու հանձնարարականներ։ Բազմազան այդ հարցերից հարկավոր է առանձնացնել հատկապես մասնագիտացված ձեռնարկությունների, դրանց արտադրության համակենտրոնացման ամենանպատակահարմար համամասնությունների որոշումը։ Այստեղ ևս հարկավոր է հաշվի առնել ո՛չ միայն կոնկրետ տնտեսությունների, այլև շրջանների, գոտիների առանձնահատկությունները։ Հանրապետությունում մասնագիտացումը հաջողությամբ ծավալելու համար, մեր կարծիքով, անհրաժեշտ են գյուղատնտեսության առաջատար ճյուղերի մասնագիտացման գլխավոր և կոնկրետ պլաններ։ Հայաստանում արդեն կան ագրարային-արդյունաբերական ձեռնարկություններ, թեև դրանք հաճախ չեն համապատասխանում արտադրության կառավարման պլանային կազմակերպման ժամանակակից պահանջներին։ Միանգամայն ակնհայտ է, որ նման ձեռնարկությունների ստեղծման ու զարգացման համար պահանջվում է խոր գիտական մոտեցում։ Ամենից առաջ նկատի է առնվում գյուղատնտեսական և արդյունաբերական ձեռնարկությունների անմիջական արդյունավետ տնտհաշվարկային կապերի զարգացումը՝ գյուղատնտեսական արտադրանքը վերամշակելու համար։ Կոլտնտեսություններն ու սովխոզները, արդյունաբերական ձեռնարկությունները սկզբնական շրջանում կարող են պարզապես կոոպերացվել։ Ագրարային-արդյունաբերական միավորումների ստեղծումը կարող է կատարվել, նախ, պետական վերամշակող ձեռնարկության և գյուղատնտեսական ձեռնարկության միաձուլման, երկրորդ, տնտեսությունում այդպիսի ձեռնարկություն կառուցելու միջոցով։ Միավորման տնտեսական նպատակահարմարությունը որոշվում է այն արտադրանքի արտադրությամբ, որում մասնագիտացված է այս կամ այն ձեռնարկությունը։ Այսպիսով, ստեղծվում է միասնական միավորում՝ կազմակերպական-տնտեսական մեկ հիմնական ձևով, կառավարման միասնական սիստեմով, ֆինանսական ընդհանուր պլանով, ներտնտեսային հաշվարկի կիրառմամբ։



Իհարկե, ագրարային-արդյունաբերական միավորումների ստեղծումը բարդ պրոցես է, այն չի կարելի արհեստականորեն արագացնել։ Բայց և հապաղել պետք չէ այս կարևոր գործում։ Անհրաժեշտ է ուսումնասիրել միավորումների կազմակերպման գործում արդեն ձեռք բերված պրակտիկ փորձը և մեր հանրապետությունում նույնպես այդ ասպարեզում փոքր-ինչ ավելի ակտիվ քայլեր ձեռնարկել։

Մեզ թվում է, որ ագրարային-արդյունաբերական կոմպլեքսների մեջ մտնող տնտեսությունները նպատակահարմար է համախմբել որպես տնտհաշվարկային միավորում։ Վերջինիս ենթակայության տակ կարող են լինել պահածոների և գինու գործարաններ, մրգերի պահեստներ, փոխադրական միջոցներ, ֆիրմային խանութներ։ Միավորման հիմնական ֆունկցիան է՝ պլանավորել արտադրությունը, կազմակերպել հումքի վերամշակումն ու արտադրանքի վաճառահանումը, որոշել տնտեսությունների մասնագիտացումը, ամրապնդել դրանց նյութատեխնիկական բազան և այլն։

Մեր կարծիքով, հանրապետությունում նպատակահարմար է նաև ընդլայնել միջտնտեսային արտադրական կոոպերացման մասշտաբները։ Բանն այն է, որ մասնագիտացված տնտեսություններից բացի, կան ոչ քիչ թվով կոլտնտեսություններ ու սովխոզներ, մասնավորապես Մեղրիի շրջանում, որոնք տալիս են մի քանի տեսակի արտադրանք։ Բայց հաճախ այդ ճյուղերի մասշտաբները բավականաչափ խոշոր չեն, որ հնարավոր լինի արդյունավետ կիրառել բարձր արտադրողական տեխնիկան և ժամանակակից տեխնոլոգիան։

Զանգեզուրի մեր գոտում, որն ընդգրկում է չորս շրջան, կոոպերացիայի անհրաժեշտությունը թելադրվում է կոլտնտեսությունների ու սովխոզների ներկա վիճակով։ Այսպես, Մեղրիի շրջանում անասնապահությունը տարին միշտ փակում է վնասով։ Բավական է ասել, որ այդ վնասը միայն շրջանի յոթ կոլտնտեսություններում 1973 թ. կազմել է 234,0 հազար ռուբլի։ Վիճակը նույնն էր նաև 1974 թվականին։ Սա, առաջին հերթին, բացատրվում է նրանով, որ տնտեսությունները մասնագիտացված չեն, և չափազանց փոքր է անասունների գլխաքանակը։ Շրջանի յոթ կոլտնտեսություններում ընդամենը կա 3.500 գլուխ խոշոր եղջերավոր անասուն (այդ թվում՝ 1.200 կով), 17.000 ոչխար և այծ, ընդամենը 220 խոզ, 15—25 հազար թռչուն։ Այստեղից էլ՝ մանր տնտեսությունների համար գրեթե միշտ անխուսափելի է արտադրանքի բարձր ինքնարժեքը։ Մեզ մոտ, օրինակ, կաթի ինքնարժեքը 2 անգամ, կենդանիների քաշաճինը՝ 1,5, ձվինը՝ 1,7 անգամ ավելի բարձր է, քան միավորումներում։

Հասկանալի է, որ նման փոքր ֆերմաներում խոսք անգամ չի կարող լինել կոմպլեքսային մեքենայացման և կենդանիների խնամքի առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման մասին։ Այս պատճառով էլ տարեցտարի ո՛չ միայն չեն նվազում, այլ մեծանում են անասնապահական ճյուղի վնասները։

Մենք նպատակ չունենք հանգամանորեն խոսել խաղողագործության և այգեգործության մասին։ Դրությունն այդ ճյուղերում համեմատաբար լավ է։ Սակայն նշենք, որ միջտնտեսային պահածոների և գինու գործարանների ստեղծումը կդառնա այն էական գործոններից մեկը, որոնք ապահովում են բարձր շահութաբերությունը և տնտեսությունների սոցիալ-տնտեսական զարգացումը։

Այս ամենը, մեր կարծիքով, բնորոշ է ո՛չ միայն Զանգեզուրի գոտու, այլև հանրապետության մի շարք այլ շրջանների համար։

Հարկավոր է նաև հաշվի առնել, որ շատ տնտեսություններում անասնապահական աշխատանքի վարձատրության համար կատարվող ծախսերի ավելացման պատճառով վերջին տարիներին վճարման աճի տեմպերը գերազանցում են աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերին։ Սա, առաջին հերթին, բացատրվում է անասնապահության մեջ գիտատեխնիկական առաջընթացի անհամաչափությամբ։ Նվազ շահութաբեր և անգամ վնասաբեր բազմաթիվ ֆերմաների առկայությունը Մեղրիի շրջանում չի ապահովում բավարար չափի կուտակումները շրջանի տնտեսություններում՝ իրենց նյութատեխնիկական բազան ամրապնդելու և կատարելագործելու համար, և կասեց-



digitised by A.R.A.R.@

տավարձը իր տատանումների ընթացքում չի կարող անցնել բնական ֆոնդի սահմաններից, իսկ Քեյնսը գտավ, որ այն վաղուց է գերազանցել իր «բնական սահմանը», որպեսզի հիմնավորի աշխատավարձն իջեցնելու իր առաջարկությունը:

Բայց, ինչպես մարքսիզմն է սովորեցնում, ճշմարտության չափանիշը հասարակական պրակտիկան է: Կարգավորվող կապիտալիզմի տեսությունները և ճգնաժամերի վերացման միջոցառումները հերքվում են հենց կապիտալիստական արտադրության զարգացման ընթացքով: Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում արտադրաուժերի արագատեմպ զարգացումը միաժամանակ կապիտալիստական արտադրության ներհատուկ հակասությունների խորացման պրոցես է: Արտադրության հասարակական բնույթի և հարստությունների յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև եղած հակասության խորացումը նախապատրաստում է վերահաս ճգնաժամը: 1969—1970 թթ. գերարտադրության և վալյուտա-ֆինանսական ճգնաժամի հարվածներից դեռ ուշքի չեկած, կապիտալիստական աշխարհը նոր անկում է ապրում: Զարգացած կապիտալիստական երկրների տնտեսական և սոցիալական խոր ցնցումներն այսօր միահյուսվում են մեծ չափերի հասնող վալյուտային և էներգետիկ ճգնաժամերին: ԱՄՆ-ում համախառն ազգային եկամուտը 1974 թ. վերջին եռամսյակում, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, իջավ 9,1 տոկոսով, իսկ արդյունաբերական արտադրանքը տարվա ընթացքում պակասեց 6,5 տոկոսով:

Մեծ չափերով աճում է գործազուրկների թիվը, որը 1975 թ. փետրվարին ամենաբարձրն է եղել հետպատերազմյան տարիների համեմատությամբ. ԱՄՆ-ում գործազուրկների թիվը կազմեց 7,5 մլն, «ընդհանուր շուկայի» երկրներում՝ 4, Ճապոնիայում՝ մեկ միլիոնից ավելի (տե՛ս «Известия», 11. 3 1975): Սպառման առարկաների գները աճում են բարձր տեմպերով: Եթե ԱՄՆ-ում նախորդ տասնամյակի առաջին 7 տարիներին գներն աճել են, միջին հաշվով, տարեկան 2,2 տոկոսով, ապա 1974 թ. դրանք բարձրացան ավելի քան 10 տոկոսով. «Ընդհանուր շուկայի» երկրներում նույն ժամանակաշրջանում գների տարեկան միջին աճը եղել էր 2,5-ից մինչև 3,5 տոկոս, իսկ 1974 թ., միջին հաշվով, 14,2 տոկոս: Ճապոնիայում 1973 թ. հուլիսից մինչև հաջորդ տարվա հուլիս ամիսը գները բարձրացան 25,2 տոկոսով: Եվ այսօր բուրժուական տնտեսագետները ոչ առանց լուրջ հիմքերի տագնապահար հայտարարում են, որ 30-ական թվականների «մեծ դեպրեսիայի» կրկնությունը բացառված չէ:

ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՏՐԱՆՍՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ՄԵԿԸ «ժողովրդական կապիտալիզմի» տեսությունն է, որը 50-ական թվականների վերջերին ձևավորվելով ԱՄՆ-ում, արագ ճյուղավորվեց և տարածվեց կապիտալիստական բոլոր երկրներում:

Հայտնի է, որ կապիտալիստական երկրներում գոյություն ունի բաժնետիրական ընկերությունների լայն ցանց: Ընդ որում, ընկերության հիմնադիր-կապիտալիստների փոքրաթիվ խումբը հազարավոր բաժնետոմսեր վաճառելու իրավունք է ձեռք բերում և դառնում հսկայական հարստությունների տնօրեն: Այս է, որ «ժողովրդական կապիտալիզմի» տեսության ներկայացուցիչները (Ա. Բեռլի, Լ. Էրհարդ, Ջ. Քոուլ, Գ. Մինզ, Պ. Դրուքեր և ուրիշներ) որակում են որպես կապիտալի «դեմոկրատացում», «ժողովրդականացում»: Բոլոր բաժնետոմս ձեռքբերողները, հավատացնում են նրանք, դառնում են ավլյալ ձեռնարկության իրավահավասար տերեր, մասնակցում ձեռնարկության հարստացմանը և ստանում շահույթից իրենց հասանելիք բաժինը: Այս ուղիով տեղի է ունենում դասակարգային տարբերությունների վերացում, ստեղծվում է «սոցիալական աստիճաններով վերելքի հնարավորություն և անցնում միջին դասակարգերի շարքը» (Дж. Коул, Капитализм в современном мире, М., 1958, стр. 28), գրում է Քոուլը: Կապիտալը վերանում է «սեփականության դիֆուզիայի միջոցով», գրում է պրոֆ. Մ. Սալվադորին, և բազմահազար աշխա-



տավորներ դառնում են ձեռնարկատերեր, իսկ շահույթից ստացված բաժինը՝ նրանց ապրուստի հիմնական աղբյուրը:

Իրողությունն այն է, որ կապիտալիստական ձեռնարկությունների կազմակերպման այս ձևը աշխատավորական զանգվածների փոքրիկ խնայողություններն էլ է կարողանում մոբիլիզացնել և դարձնել կապիտալ, այսինքն իրենց իսկ՝ աշխատավորներին շահագործելու միջոց: Տեղի է ունենում ոչ թե սեփականության դիֆուզիա, այլ բաժնետոմսերի դիֆուզիա, որը մեծացնում է ֆինանսական մագնատների տնտեսական հզորությունը: Բաժնետիրական ընկերությունների իսկական տերերը խոշոր կապիտալիստների այն փոքրաթիվ խումբն է, որի ձեռքումն է գտնվում, այսպես կոչված, «հսկիչ ծրարը», այսինքն՝ բաժնետոմսերի սահմանված այն քանակը, որն իրավունք է տալիս նրանց տնօրինելու ձեռնարկության ողջ գործունեությունը և յուրացնելու շահույթի առյուծի բաժինը: Այդ այնքան ակնհայտ է, որ ակամայից խոստովանում են նաև իրենք՝ բուրժուական տնտեսագետները. «Ժամանակակից ամերիկյան խոշոր կորպորացիան գրեթե լրիվ անկախ է բաժնետերերից», գրում է Ջ. Գելբրեյթը: Պ. Սամուելսոնի վկայությամբ՝ «Ընկերությունների նեղ շրջանակներում շահույթի մեծ մասը կամ յուրացնում են կամ տալիս իրենց հարազատներին՝ բարձր աշխատավարձի, կենսաթոշակների և պարգևատրումների ձևով» (П. Самуэльсон, Экономика, стр. 102): Դեռ Մարքսը գրել էր բաժնետիրական ընկերություններում գործող այս գայլային օրենքի մասին, որտեղ «մանր ձկները կուլ են գնում շնաձկներին, և ոչխարները՝ բորսայի գայլերին» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մ. 1, Հայպետհրատ, 1947, էջ 430):

Այս ամենից հետո դժվար չէ հասկանալ, թե ինչու՝ աշխատավորները առանձնապես հակում չեն ցուցաբերում բաժնետոմսերի ձեռքբերման գործում, և ձեռնարկատերերն ու կառավարող շրջանները դիմում են բաժնետոմսերի տարածման հարկադրական ձևերի: Այդ տեսակետից հատկապես աչքի են ընկնում արևմտագերմանական կապիտալիստները: ԳՖՀ-ում բուրժուական տնտեսագետները փառաբանում են կառավարական, այսպես կոչված, «սեփականության ձևավորման օրենքը», որը, իբր, նպատակ ունի բանվորներին դարձնել սեփականատերեր նրանց համար բաժնետոմսեր ձեռք բերելու միջոցով: 1971 թ. հունվարի 1-ից ուժի մեջ մտավ այդ կարգի 3-րդ օրենքը, և բանվորների աշխատավարձից պահումների գումարը կրկնապատկվեց՝ հետագայում բաժնետոմսերով վճարելու համար:

«Եկամուտների բաշխման» այս տեսությունը նոր չէ: Նրա տեսաբաններից Յա. Պենը վերարտադրում է Ժ. Բ. Սեյին, այն «շտկումով», որ հարստության ստեղծմանը մասնակցում են ոչ թե երեք (կապիտալ, աշխատանք, հող), այլ չորս գործոններ՝ նաև ձեռնարկատերը: Բայց Պենի այս «շտկումն» էլ նոր չէ. ավելի քան մեկ դար առաջ Ն. Սենիորն էր ասում, թե ձեռնարկատերն արտադրության մեջ ներդնում է և՛ իր կապիտալը, և՛ իր փորձն ու ունակությունները: Հետևությունը բոլոր դեպքերում նույնն է՝ արտադրված հարստությունը պետք է բաշխվի ըստ այն ստեղծող գործոնների մասնակցության աստիճանի: ԳՖՀ-ում պրոպագանդվող այս ուղղություններն ամփոփվում են «ձևավորվող հասարակություն» ընդհանուր տեսության մեջ, ըստ որի ֆեդերատիվ հանրապետության բոլոր խավերը պետք է համախմբվեն արտաքին (գլխավորապես սոցիալիստական երկրների) և ներքին (հեղափոխական շարժումների) սպառնացող ուժերի դեմ հաջողությամբ պայքարելու համար: Բայց «սոցիալական ինտեգրացիայի» այս քարոզն էլ այլ բան չէ, քան անցյալ դարի Մյուլեր-Շտրանի «մասն ամբողջին ենթարկելու» ռեակցիոն սոցիոլոգիայի մի նորագույն տարբերակ:

Կապիտալի «դեմոկրատացման» այս բոլոր պարտադիր և կամավոր միջոցներն ավելի են ամրապնդում ֆինանսական կապիտալի տիրապետությունը: Հենց Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում «բնակիչների մեկ տոկոսը տիրում է բաժնետոմսերի և ինվեստիցիոն սերտիֆիկատների՝ 90 տոկոսին» (РЖ, 1973, № 1, стр. 35): Այդպիսի վիճակ գոյություն ունի նաև կապիտալիստական զարգացած մյուս երկրներում: Հետևաբար, ինչպես Վ. Ի.



digitised by A.R.A.R.@

Լենինն էր նշում, «Ակցիաներն ունենալու «դեմոկրատացումը», որից բուրժուական սոփեստներն ու օպորտունիստական «նույնպես սոցիալ-դեմոկրատներն» սպասում են (կամ հավատացնում են, թե սպասում են) «կապիտալի դեմոկրատացումը», մանր արտադրության դերի ու նշանակության ուժեղացումը և այլն,— իրականում ֆինանսական օլիգարխիայի հզորությունը մեծացնելու եղանակներից մեկն է» (Երկեր, հ. 22, էջ 299):

ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՏՐԱՆՍՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՀԱՋՈՐԴ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆԸ հայտնի է որպես «ինդուստրիալ հասարակության» տեսություն:

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը բուրժուական տնտեսագիտական գրականության մեջ ներկայացվում է որպես «երկրորդ արդյունաբերական հեղաշրջում», որը, սակայն, իր բնույթով տարբերվում է XVIII դարի արդյունաբերական հեղաշրջումից: Առաջին հեղաշրջումը, ըստ այդ հեղինակների, եղել է սոսկ արտադրամիջոցների և տեխնոլոգիայի տեխնիկական բնույթի կատարելագործման պրոցես, մինչդեռ այս երկրորդ հեղաշրջումը, որի բովանդակությունն արտադրության ավտոմատացումն է (Դիբոլդ), առաջ է բերել նաև սոցիալական խոր հեղափոխություն: Արտադրության տեխնիկական կառուցվածքի և հասարակության տնտեսական, սոցիալական կառուցվածքի «արմատական» փոփոխությունների մասին ուսմունքն էլ ահա կազմում է «ինդուստրիալ հասարակության» տեսության բովանդակությունը:

Այս հոսանքի հիմնադիրներից Ու. Ռոստոուն (ԱՄՆ), Մարքսի տնտեսական ֆորմացիաների ուսմունքը համարելով հնացած, հայտարարում է, որ աշխարհի երկրները միմյանցից տարբերվում են միայն տնտեսական զարգացման մակարդակներով, կամ, ինչպես նա է ասում, «աճման աստիճաններով»: Հետևաբար, Արևելքի երկրները գտնվելով զարգացման միջին մակարդակի վրա, ընթանում են Արևմուտքի երկրների հարթած ուղիով:

Տեխնիկական նորամուծությունները փոխում են աշխատանքի և ապրուստի պայմանները, որոնք կապվում են արտադրության համակարգի տրանսֆորմացիայի հետ: «Տեխնիկական և սոցիալական փոփոխությունների փոխադեցությունը տնտեսական աճման պրոցեսի բանալին է» (РЖ, 1974, № 1, стр. 54), գրում է Ս. Կուզնեցը (ԱՄՆ):

Ինդուստրիալ հասարակության առաջատար ջոկատները, ըստ Ջ. Գելբրեյթի (ԱՄՆ), խոշոր կորպորացիաներն ու պետական միավորումներն են, որտեղ «աշխատողի և ֆիրմայի շահերի նույնությունը սահմանված և ընդունված դրդապատճառների սիստեմի մի մասն է» (Дж. Гелбрейт, Новое индустриальное общество, М., 1970, стр. 318): Միավորման մեջ ձեռնարկատերը «անհետացող դեմք է», գրում է Գելբրեյթը, նրա գործունեության տերն ու տնօրենը «տեխնոստրուկտուրան» է, որի մեջ, ըստ հեղինակի, մտնում են բոլոր նրանք, «ովքեր ունեն մասնագիտացված գիտելիքներ, կամ կոլեկտիվ որոշումներ ընդունելու փորձ և ունակություններ» (Նույն տեղը, էջ 99): «Կոլեկտիվ որոշումներ ընդունելու փորձ» ունեցողները բանվորներն են, որոնք, Գելբրեյթի ասելով, գործուն մասնակցություն ունեն միավորման ղեկավարման բնագավառում:

Տեխնիկայի կապիտալիստական կիրառումը, սակայն, կապված է գործազուրկների բանակի մեծացման հետ, մի հանգամանք, որը շրջանցել չեն կարող նույնիսկ բուրժուական տնտեսագետները: Բայց բուրժուական գռեհիկ տնտեսագիտության համար հետևողական տրամաբանությունն ամենևին պարտադիր չէ: Ինդուստրիալ հասարակության տեսաբաններից Ժ. Ֆուրաստյեն փորձում է հավատացնել, թե տեխնիկական նորամուծությունների հետ կապված «տեխնոլոգիական» գործազրկությունը ժամանակավոր բնույթ ունի: Եվ քանի որ արտադրության նոր ճյուղերը ընդգրկում են դուրս մղված բանվորներին, ապա կարճատև վերաորակավորումից հետո նրանք զբաղեցնում են «հատուկ որակավորման մասնագետների թափուր տեղերը», ավելացնում է Գելբրեյթը (Նույն տեղը, էջ 293):



Բայց «տեխնոլոգիական գործազրկության» և XIX դարի «փոխհատուցման» տեսության միջև տարբերությունն այն է միայն, որ «նորագույն» տեսության ներկայացուցիչներից ոմանք, ավելի առաջ գնալով, պնդում են, թե տեխնիկական առաջընթացի հետևանքով ընդլայնվող էկոնոմիկան «ավելի շատ բանվորներ է ընդգրկում, քան դուրս մղում» (Շելենբերգ): Նպատակն արդարացնում է միջոցը, ինչպես ասվում է: Գռեհիկ տնտեսագիտության խնդիրն է փառաբանել կապիտալիզմը, որի համար Ժ. Բ. Սեյի «շահերի ներդաշնակության» և «փոխհատուցման» հին երգերը եղել և մնում են որպես հարմար միջոցներ:

«Ինդուստրիալ հասարակության» տեսության հորինած դրույթները հերքելու համար բազմաթիվ նյութեր կան հենց իրենց՝ բուրժուական տնտեսագետների աշխատություններում: Ամենահարուստ կապիտալիստական երկրում՝ ԱՄՆ-ում, բոլոր ընտանիքների 20—30 տոկոսի համար բնորոշ են «ցածր եկամուտները, խղճուկ կրթությունը, վատ բնակարանները, հետնախորշերը, թերսնումը» (Э. Хансен, Экономические циклы и национальный доход, М., 1959, стр. 689), գրում է է. Հանսենը (ԱՄՆ) (տե՛ս նաև П. Самуэльсон, Экономика, стр. 126): Ինքը՝ Ջ. Գելբրեյթը, խոստովանում է, որ «Ջեներալ մոտորսի» հասույթը 1963 թ. 50 անգամ ավելի էր Նևադա նահանգի եկամուտներից, 8 անգամ՝ Նյու-Յորքի նահանգի եկամուտներից և կազմում էր ֆեդերալ կառավարության եկամուտների մեկ հինգերորդ մասից փոքր-ինչ պակաս (տե՛ս Ջ. Գելբրեյթի նույն աշխատությունը, էջ 118):

«Ինդուստրիալ հասարակության» տեսության սնանկությունը վկայող նման մեջբերումների թիվը կարելի է ավելացնել, բայց դրա առավել պերճախոս ապացույցն այն է, որ բուրժուական տնտեսագետներն արդեն հրաժարվում են «ինդուստրիալ հասարակության» տեսությունից ու պրակտիկայից՝ դրանք փոխարինելով այսպես կոչված, «պոստինդուստրիալիզմով»: Սրա հեղինակների քարոզած «նոր հասարակության» բովանդակությունը ոչ թե արտադրության զարգացումն է հանուն կուտակման ու առավելագույն շահույթների, այլ արտադրություն՝ հանուն հասարակության պահանջմունքների բավարարման: «Ինդուստրիալ հասարակության» բարձրագույն աստիճանի՝ «պոստինդուստրիալիզմի» հիմքում ընկած է ոչ թե «տեխնոկրատիզմը», այլ «հումանիզմը»: Շահույթի կուտակման սկզբունքով գործող ձեռնարկատերերը գնում են դեպի ինքնասպանություն, գրում է է. Մոմզենը (ԳՖՀ) և ավելացնում. «Ձեռնարկության ղեկավարությունը պետք է մտահոգվի, որպեսզի յուրաքանչյուր աշխատող՝ դիրեկտորից սկսած մինչև նորեկը, ապահովված լինի իր որակավորումը բարձրացնելու հնարավորությամբ» (РЖ, 1973, № 3, стр. 38):

Դժվար չէ նկատել, որ «ինդուստրիալ հասարակության» այս նոր տարբերակը իր բովանդակությամբ մոտենում է բուրժուական գաղափարախոսությունների կողմից վերջին տարիներին ջանասիրությամբ պրոպագանդվող «կոնվերգենցիայի տեսությանը»: Բանն այն է, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տնտեսական և քաղաքական աճող հեղինակության ճնշման ներքո սոցիալիզմի վերաբերյալ բուրժուական տեսություններն ավելի են ճյուղավորվում: Բազմաթիվ բուրժուական սոցիոլոգներ այժմ սոցիալիզմը համարում են բոլոր երկրների ապագան: Կապիտալիստական երկրներում հարյուրավոր ինստիտուտներ զբաղվում են սոցիալիստական երկրների էկոնոմիկայի զարգացման օրինաչափությունների ուսումնասիրությամբ, որոնց աղավաղման բազայի վրա ստեղծվում են սոցիալիզմի վերաբերյալ բուրժուական տեսության նորանոր տարբերակներ:

Կոնվերգենցիայի տեսաբանները (Ռ. Արոն, Յան Տինբերգեն, Հ. Շելսկի, Պ. Սորոկին, Ու. Բակինգհեյմ, Ա. Բեռլի, Ջ. Գելբրեյթ և ուրիշներ) առաջ են քաշում այն դրույթը, թե Արևելքի և Արևմուտքի սոցիալական սիստեմների տարբերությունները հասարակության ինդուստրիալ զարգացման ընթացքում փոքրանում են և ապագայում իսպառ կվերանան, երբ նրանք ձուլվեն մեկ կատարյալ «հիբրիդ» տնտեսաձևի մեջ, որը կներառի ինչպես Արևելքի, նույնպես



digitised by A.R.A.R.@

# ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔ

**Ա. Ս. ՄԱՆԱՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԻ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ այն հարցերից է, որ հավասարապես հետաքրքրում են և՛ փիլիսոփաներին, և՛ կոնկրետ գիտությունների մասնագետներին։ Մենք կառանձնացնենք այդ պրոբլեմի ժամանակակից քննարկման և լուծման երեք հիմնական միտումներ, որոնք ամբողջական գծերով ներկայացնում են դրա արդի վիճակը և որոնք իրենց զուգահեռներն ունեն գիտության ու փիլիսոփայության պատմության մեջ։

Առաջին միտումը, որը մենք կանվանենք պոզիտիվիստական-սցիենտիստական, իր ծայրահեղ դրսևորումներում ժխտում է աշխարհայացքային գիտելիքների իմացաբանական-մեթոդաբանական և էվրիստիկական նշանակությունը գիտության համար, անանցանելի անդունդ է տեսնում գիտության և աշխարհայացքի միջև՝ աշխարհայացքային գիտելիքները հայտարարելով անիմաստ, իսկ աշխարհայացքային (ուրեմն և փիլիսոփայական) պրոբլեմները՝ կեղծ։

Երկրորդ միտումը տրամագծորեն հակադիր է առաջինին։ Այն կարելի է որակել որպես սպեկուլյատիվ-հակասցիենտիստական մոտեցում, որի կողմնակիցները, օրինակ էկզիստենցիալիստները, կասկածի տակ են դնում գիտության արժանահավատությունն ու ճշգրիտ մեթոդների արժանիքները և «հիմնավորում» են ճշմարտության ձեռք բերման իռացիոնալիստական, սպեկուլյատիվ ուղիների առաջնայնությունը։

Վերջապես, երրորդը, դիալեկտիկական մատերիալիզմի մոտեցումն է, ըստ որի գիտության և աշխարհայացքի փոխհարաբերության հարցի լուծումը չպետք է հանգի դրա կանխալուծմանը՝ արտագիտական այս կամ այն նկատառումներով. այդ հարաբերությունը պետք է ոչ թե նախասահմանվի, այլ ի հայտ բերվի իմացության զարգացման պատմական նյութից, բուն գիտության և աշխարհայացքի ռեալ պատմությունից։ Այս պահանջները և այս հարցադրումը ամբողջովին համապատասխանում են գիտության ոգուն և գիտականության չափանիշներին, որոնց հետևողական կիրառումը միայն կարող է ապահովել գիտության և աշխարհայացքի փոխհարաբերության օբյեկտիվ նկարագրի վերհանումը։ Հենվելով այս սկզբունքներով կատարված հետազոտությունների վրա, դիալեկտիկական մատերիալիզմը ընդունում է աշխարհայացքային գիտելիքների իմացաբանական-մեթոդաբանական և էվրիստիկական նշանակությունը գիտական իմացության պրոցեսում, ընդգծում է այդ գիտելիքների ներգիտական անհրաժեշտությունը, տալիս է կոնկրետ-գիտական և աշխարհայացքային գիտելիքների փոխներգործության նկարագիրը։

Դիալեկտիկական մատերիալիզմը «աշխարհայացք և գիտություն» հարցի



վերաբերյալ պոզիտիվիստական-սցիենտիստական և իռացիոնալիստական-հակասցիենտիստական տեսակետներն ամենից առաջ հերքում է այդ հարցի իր օբյեկտիվ-գիտական լուծումով։ Մինչ այդ մասին խոսելը, անդրադառնանք գիտության և աշխարհայացքի բուն ըմբռնումներին։

ԳԻՏԱԲԱՆԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՉԿԱ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԻԱՍՆԱԿԱՆ, համընդհանուր ճանաչում գտած սահմանում։

Մենք կառանձնացնենք գիտության երկու ըմբռնում, որոնք և սույն հոդվածի շրջանակներում լրիվ կբավարարեն մեր պահանջները։

Գիտությունը նախ և առաջ մարդկային հասարակական գործունեության ձև է, որի միջոցով մարդը որոշակի հարաբերության մեջ է մտնում շրջապատող իրականության հետ, որոշակի մոտեցում է ցուցաբերում դրա նկատմամբ։ Փիլիսոփայության մեջ գիտությունից բացի առանձնացվում են մարդկային գործունեության այլ ձևեր՝ պրակտիկ, էթիկական, էսթետիկական, որոնցում դրսևորվում են իրականության նկատմամբ հասարակական մարդու՝ իրարից որակապես տարբեր մոտեցումները։ Եվ ահա, ի տարբերություն պրակտիկ, էթիկական և էսթետիկական մոտեցումների, գիտությունը մարդու՝ իրականության նկատմամբ ունեցած տեսական վերաբերմունքը, նրա տեսական յուրացումն է։

Գիտությունը, այնուհետև, ավելի նեղ և հատուկ իմաստով գիտական գիտելիքների համակարգ է՝ իբրև այդպիսին։ Այս իմաստով գիտությունը իդեալական, տեսական օբյեկտների (կատեգորիաների, օրենքների, տեսությունների, ուսմունքների) համակարգ է։

Գիտությունը, ինչպես ընդունված է ասել, ճշմարտի ոլորտն է, և մարդը դիմում է նրան իրեն հուզող բազմաթիվ հարցերի պատասխաններն այնտեղ գտնելու ակնկալությամբ։ Եվ դա արվում է ոչ թե սոսկ հետաքրքրասիրության կամ ինտելեկտուալ բավականության համար։ Այն բանից հետո, երբ մարդկության նյութական հարաճուն պահանջմունքների բավարարումը կապվում է աշխարհի օրինաչափությունների իմացության վրա հիմնված բնության նվաճման ու վերափոխման հետ, գիտության՝ որպես այդ իմացության միջոցի, անհրաժեշտությունը դառնում է սոցիալական անհրաժեշտություն։ Տառապանքների, զոհողությունների և նույնիսկ զոհերի գնով մարդը անզուսպ ձգտում է դեպի ճշմարիտը, որպեսզի այն ի սպաս դնի իր երազանքների, իր իդեալների իրականացմանը, որոնք բխում են շրջապատող իրականության մեջ կողմնորոշվելու և սոցիալական նպատակադիր գործունեության՝ միայն մարդուն ներհատուկ պահանջմունքներից։

Եվ իրոք, անհնար է պատկերացնել սոցիալական սուբյեկտի (անհատ, խավ, դասակարգ) պրակտիկ գործունեություն առանց որոշակի ուղղվածության, առանց որոշակի սոցիալական օրիենտացիայի։ Նպատակադրվածությունը, առաջընթացի բազմաթիվ հնարավորությունների մեջ որոշակի մեկի ընտրությունն անհրաժեշտաբար ենթադրում են իրականության երևույթների նկատմամբ գնահատողական վերաբերմունք, վերաբերմունք, որ դրսևորվում է ոչ միայն մարդու իդեալների, այլև նրա պատկերացումների, համոզմունքների, հայացքների մեջ։ Հենց այդ պատկերացումների, համոզմունքների, հայացքների ու իդեալների համակարգն էլ, որոնց մեջ մարմնավորվում են մարդու ըմբռնումներն իր և շրջապատող իրականության փոխհարաբերության, այդ իրականության մեջ գրաված իր տեղի, կոչման, նպատակների և հնարավորությունների մասին, կոչվում է աշխարհայացք։

Աշխարհայացք մարդն ունեցել է այն օրից ի վեր, երբ գիտակցել է իրեն որպես գործող ու ճանաչող սուբյեկտ, իրեն բաժանելով բնությունից և հակադրելով նրան։ Ընդունված է ասել, որ հին ժողովուրդների մոտ պատմականորեն ամենից առաջ ձևավորվել է դիցաբանական աշխարհայացքը։ Այնուհետև դրան փոխարինել է կրոնական աշխարհայացքը։ Ի վերջո, գիտական գիտելիքների զարգացմանը զուգահեռ ասպարեզ է եկել փիլիսոփայությունը։ Անկասկած է, որ գիտությունն իր զարգացմանը համընթաց ավելի ու ավելի մեծ



digitised by A.R.A.R.@

ազդեցություն է գործում մարդկանց աշխարհայացքի՝ նրանց պատկերացումների, հայացքների, համոզմունքների վրա։ Սակայն վերջիններս ձևավորման իրենց ակունքներով և բովանդակությամբ միշտ էլ ավելի լայն հիմք են ունեցել, քան սոսկ գիտությունն է։ Աշխարհայացքային համոզմունքները, իդեալները, պատկերացումները հանդես են գալիս որպես աշխարհի իմացության և մարդկային գոյի ըմբռնումներ, որպես շրջապատող իրականության նկատմամբ ոչ միայն տեսական-գիտական, այլև պրակտիկ, էթիկական և էսթետիկական մոտեցումների ընդհանրացումներ, որպես պատմական զարգացման եզրակացություններ, սոցիալական փորձի հետևություններ։

ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԻ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ իրենց բնույթի և փոխհարաբերության բացահայտման տեսակետից այնքան են կարևոր, որ պահանջում են հատուկ քննություն։

Առաջին տարբերությունը, որ անմիջապես բխում է գիտության և աշխարհայացքի սահմանումներից, գիտության սոցիալական չեզոքությունն է մի կողմից, և աշխարհայացքային գիտելիքների սոցիալական ուղղվածությունն ու լիցքավորվածությունը՝ մյուս կողմից։ Եվ, իրոք, գիտությունը, ինչպես ասվեց, իր իդեալի մեջ ձգտում է տալ իրերի և երևույթների ճշմարիտ, օբյեկտիվ, հետևաբար նաև անկողմնակալ նկարագիրը։ (Այս տեսակետից այլ է հասարակական գիտությունների հարցը, որի քննությունը, սակայն, դուրս է սույն հոդվածի շրջանակներից)։

Այդպիսին չէ աշխարհայացքը։ Աշխարհայացքային գիտելիքները սոցիալապես չեզոք, անկողմնակալ լինել չեն կարող, քանի որ շոշափում են մարդկային գոյության, կյանքի իմաստի առավել սկզբունքային հարցերը, տալիս են դրանց սոցիալապես լիցքավորված լուծումները, որոնք իրենցով պայմանավորում են դրանք ընդունող սուբյեկտի սոցիալական վարքագիծն ու կենսական դիրքորոշումը։

Վերը նշված տարբերության հետ կապված է գիտության և աշխարհայացքի մեկ այլ ցայտուն տարբերություն։ Դա այն է, որ գիտությունն իր կողմից դրված հարցերին տալիս է կամ գոնե աշխատում է տալ միանշանակ պատասխաններ, այն դեպքում, երբ աշխարհայացքային հարցերը սկզբունքորեն ենթադրում են տարբեր և նույնիսկ հակադիր լուծումներ։ Սա, իհարկե, չի նշանակում, թե գիտությունը բացառում է հակադիր կարծիքներն ու վարկածները, հարցերի իրարամերժ լուծումները։ Կարծիքների պայքարը, վարկածների «մրցակցությունը» խուսափելի են գիտության մեջ։ Այդ պայքարը հենց գիտության ներքին կյանքն է։ Սակայն ժամանակի ընթացքում գիտությունը հաստատում է այդ դրույթներից մեկի ճշմարտությունը և հերքում է մյուսները, ընդունում է մեկը և մերժում մյուսները։ Գիտության համար ճշմարտությունը մեկն է. իրարամերժ երկու դրույթներ նրանում միաժամանակ և նույն հարաբերությամբ ճշմարիտ լինել չեն կարող։ Մինչդեռ աշխարհայացքային հարցերը ոչ թե սովորաբար չեն ստանում, այլև սկզբունքորեն չեն կարող ստանալ միանշանակ լուծումներ։ Փիլիսոփայական ամեն մի դրույթի հաստատումը միաժամանակ հակոտնյա դրույթի հերքումն է։ Այստեղից պարզ է դառնում, որ փիլիսոփայության գոյության ձևը իրարամերժ փիլիսոփայական ուսմունքների պայքարն է, իսկ նրա պատմությունը՝ անհամատեղելի, իրարամերժ փիլիսոփայական ուսմունքների պայքարի պատմությունը։ «Ցանկացած փիլիսոփայական ուղղություն, այսպիսով, ունի իր հակոտնյան, կարելի է նույնիսկ ասել, որ նա ենթադրում է իր հակոտնյայի գոյությունը, նման այն բանին, ինչպես ֆիխտեական ԵՍ-ը ենթադրում է ոչ-ԵՍ-ին»[1]։

Վերը նշած տարբերությունները պայմանավորում են գիտության և փիլիսոփայության մեջ հետազոտության, հիմնավորման, ապացուցման և փաստարկման մեթոդների տարբերությունները։ Ամենից առաջ աչքի է զարնում հետազոտության փորձնական մեթոդների (դիտարկում, էքսպերիմենտ, ին-

1) Т. И. Ойзерман — Философия, наука, идеология. В сб. «Философия и наука», М., 1972, стр. 97.



դուկցիա) նկատմամբ ունեցած նրանց տարբեր մոտեցումները։ Դիտարկման, փորձի ու փորձարկման մեթոդները, չափման ու փորձնական ստուգման պրոցեդուրաները գիտությունից (հատկապես բնագիտությունից) անբաժանելի են։ Գիտական ամեն մի տեսություն հենվում է դիտարկման և փորձի միջոցով արձանագրված փաստերի վրա, իսկ այնուհետև հաստատվում է հետևությունների փորձնական ստուգման միջոցով։ Տրամաբանորեն բխեցվող հետևությունների փորձնական հաստատումը, այսպիսով, տվյալ տեսության ապացուցման ամենից ծանրակշիռ փաստարկն է։

Այդպես չէ աշխարհայացքային գիտելիքներում։ Աշխարհայացքային դրույթները փորձնական տվյալների անմիջական ընդհանրացումներ չեն և նրանցից անհնար է անել փորձում ստուգելի անմիջական հետևություններ։ Ամենանուրբ ձևով դրված փորձով իսկ չի կարելի հաստատել կամ հերքել այս կամ այն աշխարհայացքային դրույթը կամ ուսմունքը։ (Դժբախտաբար մեզ մոտ հաճախ պարզեցման միտումով պարզունակացնում են աշխարհայացքային դրույթների հիմնավորման, աշխարհայացքի և փորձի փոխհարաբերության հարցերը)։

Փորձի և փորձնական մեթոդների նկատմամբ գիտության և աշխարհայացքի ունեցած տարբեր վերաբերմունքից ածանցվում են կառուցվածքային նրանց տարբերությունները։ Գիտական բոլոր տեսություններն ունեն տրամաբանական որոշակի կառուցվածք։ Նրանցում կարելի է առանձնացնել ելակետային դրույթների այն համախումբը, որոնցից տրամաբանական օրենքների համաձայն արտածվում են տեսության մյուս դրույթները։ Դրանց մի մասը սովորաբար անմիջապես ստուգվում է փորձում, այն դեպքում, երբ հիմնադրույթները նման անմիջական փորձնական ստուգման, դիտարկման չեն ենթարկվում։ Ըստ այդմ տեսության ներսում առանձնացվում են երկու կարգի՝ էմպիրիկ և տեսական գիտելիքներ, երկու մակարդակներ՝ էմպիրիկ (փաստերի արձանագրություններ, էմպիրիկ օրինաչափություններ և այլն) և տեսական (օրենքներ, տեսական կոնստրուկտներ, սկզբունքներ և այլն)։

Այդպիսին չէ աշխարհայացքը։ Աշխարհայացքային պնդումներից և ոչ մեկը, ի տարբերություն մյուսների, չի կարելի անմիջապես ստուգել փորձում, նրանցից և ոչ մեկին չի կարելի տալ անմիջական փորձնական հիմնավորում։ Նրանք գտնվում են, մի տեսակ, փորձից միևնույն «հեռավորության» վրա։ Այդ պատճառով նրանք զուրկ են կառուցվածքային այնպիսի մակարդակներից, ինչպիսիք կոնկրետ գիտական տեսություններում հանդիսանում են էմպիրիկ և տեսական մակարդակները։

Տարբեր են նաև կոնկրետ գիտական տեսությունների և աշխարհայացքային ուսմունքների կապերի ձևերը։ Աշխարհայացքային և ոչ մի հիմնարար ուսմունք հակադիր կամ մեկ այլ ուսմունքի մասնավոր դեպքը լինել չի կարող այնպես, ինչպես դա լինում է, ասենք, բնագիտության մեջ, երբ ավելի ընդհանուր տեսությունից սահմանային անցման միջոցով հնարավոր է լինում անցնել մեկ այլ մասնավոր տեսության։ Աշխարհայացքային ամեն մի ուսմունք շոշափում է մարդ-աշխարհ հարաբերության որևէ սահմանային՝ մյուսներին չհանդեցվող, մյուսներից անկախ կողմ։ Այդ պատճառով աշխարհայացքային որևէ հարցի այս կամ այն լուծումը տրամաբանորեն միանշանակ ձևով չի պայմանավորում մյուս հարցերի որոշակի լուծում։ Աշխարհի մատերիալիստական ըմբռնումը, օրինակ, ինքնին անհրաժեշտաբար չի պայմանավորում զարգացման հարցի դիալեկտիկական լուծումը և հակառակը։

Վերը նշած բոլոր տարբերությունները, ի վերջո պայմանավորում են գիտության և աշխարհայացքի զարգացման օրինաչափությունների, իմացության պրոցեսում նրանց դերի տարբերությունները։ Գիտությունները ենթարկվում են, պատկերավոր ասած, գծային զարգացման օրինաչափությանը։ Նրանցում անընդհատ դրվում և լուծվում են նոր հարցեր։ Այստեղ նույն գյուտը երկու անգամ չի արվում։ Ինչպես ասում են, գիտության մեջ արգելվում է «նորից հեծանիվ հայտնագործելը»։

Այլ կերպ է զարգանում աշխարհայացքը։ Պրոբլեմներն այստեղ կարծես

լիզմի հիմնական սկզբունքների ներքին հարմոնիային, նրանց փոխհամաձայնվածությանը, աշխարհի նկատմամբ նրանց նույն ուղղվածությանը, նույն օրինաչափային: Այդ չափանիշների և մարքսիստական փիլիսոփայական ուսմունքի հիմնական սկզբունքների միջև նկատվում են զարմանալի զուգահեռներ, որոնք և պայմանավորում են դիալեկտիկական մատերիալիզմի՝ որպես աշխարհհայացքային ուսմունքի հատուկ տեղը փիլիսոփայական ուսմունքների շարքում:

Գիտականության գլխավոր չափանիշը, գիտության հիմնական սկզբունքը, որ և պայմանավորում է գիտության ոգին, բնությունն ինքն իրենով բացատրելու սկզբունքն է: Բնական երևույթները բացատրելիս այն արգելում է գերբնական էությունների գոյության ենթադրումը: Բնության ամեն մի երևույթի պատճառ պետք է փնտրել հենց բնության մեջ և ոչ թե նրանից դուրս: Այս սկզբունքը, ինչպես դա ակնհայտ է, գիտական բացատրություններից դուրս է մղում ոգիներին, աստվածներին և գերբնական բոլոր ուժերին ու էություններին: Եվ որքա՞ն համահնչյուն է այդ սկզբունքը փիլիսոփայության մատերիալիստական սկզբունքին, որը ելնում է ոգու նկատմամբ բնության առաջնայնության գաղափարից, որը պնդում է, թե բնության մեջ շարժվող մատերիայից բացի ուրիշ ոչինչ չկա:

Գիտության կոչումը աշխարհի ճանաչողությունը, աշխարհի ճշմարիտ պատկերի կառուցումն է: Ճշմարտության ձգտումը գիտության հիմնական միտումն է, ճշմարտության ծառայելը՝ գիտության հիմնական նպատակը: Այս տեսակետից անիմաստ է խոսել աշխարհի անճանաչելիության մասին: Աշխարհը ճանաչելի է,— պնդում է դիալեկտիկական մատերիալիզմը և դրանով իսկ կանգնում գիտության դիրքերում: Դիալեկտիկական մատերիալիզմի իմացաբանական օպտիմիզմը, այսպիսով, լրիվ ներդաշնակ է գիտության ոգուն, նրա էությանն ու նպատակներին: Ագնոստիցիզմը գիտության և գիտնականի տեսակետից էվրիստիկական արժեք ունենալ չի կարող: Գիտնականը հետազոտության ընթացքում չի կարող առաջնորդվել հետազոտվող օբյեկտի անճանաչելիության սկզբունքով. դա միայն զինաթափել կարող է նրան:

Գիտությունն աշխարհը ճանաչում է նրանում օրինաչափություններ հայտնագործելու ճանապարհով: Օրենքները գիտության հենքն են: Առանց օրենքի չկա երևույթի բացատրություն: Առանձին վերցրած, յուրաքանչյուր գիտնականի փայփայած երազանքը հետազոտության իր բնագավառում հնարավորին չափ հիմնարար օրենքների հայտնագործումն է: Աշխարհը, այսպիսով, գիտության տեսակետից և գիտության մեջ ներկայանում է որպես օրինաչափ աշխարհ: Աշխարհն օրինաչափ է. բայց չէ որ սա միաժամանակ հենց դիալեկտիկական մատերիալիզմի հիմնարար սկզբունքն է:

Այսպիսի զուգահեռ կարելի է անցկացնել նաև դետերմինիստական սկզբունքի և գիտության կողմից աշխարհում պատճառական կապերի ունիվերսալ բնույթի անվերապահ ընդունման միջև: Բնության մեջ բոլոր երևույթներն ունեն իրենց պատճառները, և գիտության խնդիրը հենց այդ պատճառների բացահայտումն է: Գիտությունը չի կարող լինել հակառակ՝ պատճառական կապերը ժխտող տեսակետից, որովհետև այն հակասում է իր ոգուն, անիմաստ է դարձնում գիտական որոնումը: Գիտնականի համար, այսպիսով, ինդետերմինիզմի սկզբունքը զուրկ է մեթոդաբանական ու էվրիստիկական որևէ նշանակությունից:

Գիտականության չափանիշների և դիալեկտիկական մատերիալիզմի հիմնական սկզբունքների համադրության այս փոքրիկ ակնարկն անգամ բավական է՝ համոզվելու համար, որ դիալեկտիկական մատերիալիզմը միակ գիտական աշխարհհայացքն է: Այդ համադրությունը պարզ է դարձնում, թե ինչու հենց դիալեկտիկական մատերիալիզմն է իր վրա վերցրել ժամանակակից գիտության ընդհանուր մեթոդաբանության դերը:



# ՕՐԳԱՆԻԶՄԻ ՀԱԿԱԻՆՖԵԿՑԻՈՆ ՊԱՇՏՊԱՆ ՈՒԺԵՐԸ

Մեր ընթերցողներից Ա. Պողոսյանը խնդրել է պատասխանել իրեն հետաքրքրող հետևյալ հարցերին.

1. Ի՞նչն է պահպանում օրգանիզմը ամենատարբեր հիվանդություններից, զանազան արտաքին տրավմաներից, ինչպե՞ս է հարմարվում այն բնակլիմայական փոփոխություններին:

2. Որո՞նք են օրգանիզմի դիմադրողականությունը բարձրացնող գործոնները:

Ելնելով մարդու առողջության պահպանման համար այս և նման այլ հարցերի հույժ կարևորությունից, խնդրեցինք պրոֆեսոր **Ս. Ճ. Սաքանյանին** հանդես գալ մեր ամսագրում:

Ստորև հրապարակում ենք այդ հարցերին նվիրված նրա հոդվածը:

*ՕՐԳԱՆԻԶՄԸ ՄԻ ԱՄԲՈՂՋԱԿԱՆ համակարգ է: Բիոլոգիական բազմաթիվ մեխանիզմների նպատակահարմար գործունեությամբ պահպանվում է նրա ներքին հավասարակշռությունը, որը և կյանքի գոյության նախապայմանն է: Այդ մեխանիզմները փոխադարձաբար առնչվում են ներվուղիներով և գործում համակերպ, առավելապես կենտրոնական նյարդահամակարգի ազդեցությամբ:*

*Օրգանիզմի ներքին հավասարակշռությունը պահպանվում է շնորհիվ այն բանի, որ նրա ֆունկցիաները, ենթարկվելով կեցության ընդհանուր թելադրանքին, փոփոխվում են շրջապատի, միջավայրի պայմանների փոփոխությանը համապատասխան: Օրինակ, սառնամանիքի դեպքում օրգանիզմի ջերմականոնավորման մեխանիզմի համարժեք փոփոխության շնորհիվ մաշկի արյունատար մազանոթները կծկվում են, որով և պակասում է արյան հոսքը դեպի ծածկութային հյուսվածքները, և դժվարանում ջերմատվության պրոցեսը: Դրան զուգընթաց հյուսվածքներում ուժեղանում է նյութափոխանակությունը, հետևապես և՝ ջերմարտադրությունը: Շոգ օրերին տեղի է ունենում ճիշտ հակառակը. մաշկի մազանոթները լայնանում են, արյունալցվում, մաշկը կարմրում է, քրտնագեղձերը շատ արյուն են ստանում և առատ քրտինք արտադրում: Քրտինքը մաշկամակերեսից գոլորշիանում է և իր հետ արտահանում սովորականից շատ ջերմություն, կանխում ջերմության կուտակման հնարավորությունն օրգանիզմում: Կարճ ասած՝ մարմնի ջերմատվությունը ցուրտ ժամանակ զսպվում է, իսկ շոգին՝ ուժեղանում, մինչդեռ ջերմարտադրությունը սառնամանիքին ուժեղանում է, իսկ շոգին թուլանում. այսպիսով, երկու դեպքում էլ օրգանիզմի ջերմաստիճանը մնում է նորմալ, կայուն մակարդակի վրա, որը խիստ անհրաժեշտ է, հատկապես կենսակարևոր օրգանների բջիջների նորմալ գործունեության համար:*

*Օրգանիզմի կենսակարևոր գործողությունների կայունությունն ապահովվում է մյուս՝ սպասարկող գործողությունների փոփոխականությամբ: Օրգանիզմի բազմաթիվ ֆունկցիաների մի մասը մշտապես գործում է: Դրանք են՝ շնչառությունը, սրտի աշխատանքը... Մինչդեռ մյուս մեխանիզմներն ու ֆունկցիաները գործում են միայն անհրաժեշտության դեպքում՝ ի պա-*



digitised by A.R.A.R.@

ների թիվը (մոտավորապես 1.000 էլեկտրոն) 100-ից մինչև 1.000 անգամ քիչ է, քան Երկրի իոնոսֆերայի համապատասխան բարձրություններում։ Պարզվեց նաև, որ Վեներայի վերին մթնոլորտը, Երկրի մթնոլորտի համեմատությամբ, ունի ավելի ցածր ջերմաստիճան։ Այդ ածխաթթվային մթնոլորտը 300—400 կմ-ի վրա դառնում է մաքուր ջրածնային։ Վեներայի վերին մթնոլորտում ատոմար թթվածին չկա։ Վեներայի շուրջը մի քանի տասնյակ հազար կմ հեռավորության վրա հայտնաբերվեց նաև նրա ջրածնային թույլ պսակը։

Առավել կարևոր տվյալներ ստացվեցին Վեներա մոլորակի մթնոլորտի վերաբերյալ։

«Վեներա» սերիայի կայանները հնարավորություն ընձեռեցին բավականին մանրամասն հետազոտելու Երկրի հարևան մոլորակի մթնոլորտի քիմիական կազմը, ջերմության և ճնշման փոփոխությունն ըստ բարձրության («Վեներա—7 և 8-ի» դեպքում ընդհուպ մինչև մակերևույթը), քամիների առկայությունը մթնոլորտի տարբեր շերտերում, լուսավորվածության ինտենսիվությունը տարբեր բարձրությունների ու մոլորակի մակերևույթի վրա և այլն։ Հաշվի առնելով նախորդ կայաններից ստացված տվյալները՝ մշտապես փոփոխվել են հաջորդ «Վեներա» ԱՄԿ-ներով անցկացվող փորձերը։ Փոփոխվել են նաև իջեցվող ապարատների վայրէջքի վայրերը։ Եթե «Վեներա—4, 5, 6 և 7» կայանների վայրէջքի տեղն ընտրված է եղել Վեներայի գիշերային կողմը, ապա «Վեներա—8» ԱՄԿ-ն իջեցվել է նրա ցերեկային կողմում։ Ջերմության և ճնշման վերաբերյալ ստացված տվյալների համեմատությունը ցույց է տալիս, որ Վեներայի ցերեկային ու գիշերային կողմերում ցուցանիշների էական տարբերություններ չկան։ Նշենք, որ Վեներայի վրա արեգակնային օրը կազմում է 117 երկրային օր, թեպետ այդ մոլորակն իր առանցքի շուրջը պտտվում է 243 երկրային օրում։ Ի դեպ, Վեներան իր առանցքի շուրջը պտտվում է Երկրին հակառակ ուղղությամբ։

ԵՎ ԱՅՍՊԵՍ, ԻՆՉՊԻՍԻ՞Ն Է ՎԵՆԵՐԱ մոլորակն ըստ ստացված տվյալների։ Մոլորակի մթնոլորտի քիմիական բաղադրությունն առաջին անգամ որոշվել է «Վեներա—4» ավտոմատ կայանի թռիչքի ժամանակ։ Այն հետագայում ճշգրտվել է «Վեներա—5 և 6» ԱՄԿ-ների թռիչքի ժամանակ նրանց վրա դրված գազանալիզատորների միջոցով։ Պարզվել է, որ մոլորակի մթնոլորտի 97 տոկոսը կազմում է ածխաթթու գազը։ Ազոտի պարունակությունը չի անցնում 2, թթվածնինը՝ 0,1 տոկոսից։ Ջրային գոլորշիների աննշան քանակություն (1 տոկոսից էլ պակաս) հայտնաբերվել է միայն մթնոլորտի վերին շերտերում գտնվող ամպաշերտի շրջակայքում։ Ի դեպ, Վեներայի ամպաշերտերի (ավելի ճիշտ՝ դրանք կազմող մասնիկների) պրոբլեմն առ այսօր մնում է չլուծված։ Փաստական նյութի պակասը հիմք է տալիս զանազան հիպոթեզների համար։ Մասնավորապես ենթադրվում է, թե 60—65 կմ բարձրության վրա վերին սահմանի և ավելի քան 10 կմ դեպի ներքև հզորություն ունեցող այդ ամպաշերտը (կամ ամպաշերտերը) բաղկացած կարող է լինել սառցե բյուրեղիկներից, մոլորակի մակերևույթից բարձրացած փոշեհատիկներից, սնդիկ կամ ամոնիակ (ամոնիակային աղեր) պարունակող միացություններից և այլն։ Ամոնիակի առկայությունը չափվեց «Վեներա—8-ի» վրա դրված սարքով, որը ցույց տվեց, որ մթնոլորտի 46—33 կմ հատվածքում ամոնիակի ծավալային պարունակությունը չի գերազանցում 0,01—0,1 տոկոսից։

Վեներայի մթնոլորտի ջերմաստիճանի և ճնշման չափումներից պարզվեց, որ այդ մոլորակն ունի չափազանց հզոր ածխաթթվային մթնոլորտ և շատ ավելի տաք է, քան Երկիրը։ Նրա մակերևույթի վրա (ցերեկային կողմում) մթնոլորտի ջերմաստիճանը հասնում է Ցելսիուսի 470±8 աստիճանի (գիշերային կողմում՝ 474±20 աստիճան), որը բարձր է ցինկի ու կապարի հալման ջերմաստիճանից։ Գազի խտությունը Վեներայի մակերևույթին 60 անգամ ավելի է, քան Երկրի վրա և միայն 17 անգամ է պակաս ջրի խտությունից։

Մթնոլորտային ճնշումը Վեներայի մակերևույթի վրա, ըստ «Վեներա—8» կայանի չափումների (ցերեկային կողմում), կազմում է 90±1,5 մթնոլորտ (կամ 90±1,5 կգ մեկ քառակուսի սանտիմետրի վրա), որը շատ մոտ է «Վեներա—7-ի» միջոցով (գիշերային կողմում) ստացված տվյալներին։ Հիշենք, որ Երկրի վրա մթնոլորտային ճնշումը հավասար է մեկ մթնոլորտի։ Վեներայի մակերևույթի ճնշումը համեմատելի է 900 մետր խորություն ունեցող ջրային հատվածքի ճնշման հետ։ Մոլորակի մակերևույթից դեպի վեր մթնոլորտի ջերմաստիճանը նվազում է և 60 կմ բարձրության վրա հասնում Ցելսիուսի 0 աստիճանի։ 52—53 կմ-ի վրա ճնշումը հավասարվում է 1 մթնոլորտի։

«Վեներա—8» կայանի հիմնական փորձերից մեկը պետք է պատասխան տար այն հարցին՝ հասնո՞ւմ է արդյոք Արեգակի լույսը մինչև Վեներայի մակերևույթը, թե՞ ամբողջովին կլանվում անհուն մթնոլորտում և ամպաշերտերում։ Այդ հարցի պատասխանն ստանալու համար իջեցվող ապարատի մեջ տեղադրված էր լուսաչափ սարքը, որով անընդհատ չափվում էր լուսավորվածությունը մթնոլորտի ողջ հատվածքում և մակերևույթի վրա։ Վեներայի տաք և խիտ մթնոլորտի արտակարգ ծանր պայմաններ-



րում լուսաչափը հիանալի գործեց, և լուսավորվածության մասին չափազանց հետաքրքրական տվյալներ ստացվեցին։ Պարզվեց, որ սպեկտրի տեսանելի տիրույթում Արևի ճառագայթների ոչ մեծ մասն այնուամենայնիվ հասնում է մոլորակի մակերևույթին, և այնտեղ լուսավորվածության զգալի տարբերություններ կան ցերեկվա ու գիշերվա միջև։ Ըստ բարձրության լուսավորվածության փոփոխությունը ցույց է տալիս, որ Վեներայի մթնոլորտը մեծ չափով կլանում է Արեգակի լույսը։ Այդ մոլորակի մակերևույթին լուսավորվածությունը նման է Երկրի մակերևույթի լուսավորվածությանը՝ ամպամած օրվա խոր աղջամուղջի ժամանակ։ Վեներայի վրա ինչ-որ հրաշքով ընկած մարդն անկարող է հորիզոնը տեսնել այնպես, ինչպես Երկրի վրա։ Նրան կթվա, թե ինքը գտնվում է հսկայական թասի մեջ, որովհետև բոլոր կողմերից հորիզոնը բարձրացված կերևա։ Այդ հանգամանքը պայմանավորված է մեծ ճնշման տակ գտնվող ածխաթթու գազի լուսաբեկման օրինաչափություններով։

«Վեներա—8-ի» վայրէջքի ժամանակ, ըստ իջեցվող ապարատի հորիզոնական տեղաշարժի, չափվեց քամու հորիզոնական արագությունը։ Ստացված տվյալների համաձայն, 20-ից մինչև 50 կմ բարձրության շերտերում փչում են վայրկյանում 20—30-ից մինչև 100 մետր արագություն ունեցող քամիներ, որոնք 10—12 կմ-ից ցածր բարձրություններում նվազում և մակերևույթին մոտ հասնում են վայրկյանում մինչև մեկ մետր արագության։ Այդ չափումները վկայում են, որ առկա է տերմինատորից (մոլորակի գիշերային և ցերեկային կողմերը տվյալ պահին սահմանազատող գծից) դեպի ցերեկային կողմն ուղղված, այսինքն՝ մոլորակի սեփական պտույտի ուղղությամբ (Վեներայի դեպքում երկրային արևելքից դեպի արևմուտք) փչող զոնալ քամի։ Այս հանգամանքը կարևոր նշանակություն ունի Վեներայի մթնոլորտի դինամիկան ըմբռնելու համար։

«Վեներա—8» ԱՄԿ-ի միջոցով Վեներայի հետազոտման ծրագրում կարևոր տեղ էր հատկացված մոլորակի մակերևույթի ֆիզիկա-քիմիական հատկությունների ուսումնասիրմանը։ Ըստ վայրէջքի ընթացքում իջեցվող ապարատի առաքվող ռադիոճառագայթների անդրադարձման, ստացվեցին մակերևութային գրունտի դիէլեկտրիկ թափանցելիության և խտության գնահատականները։ Ըստ այդ չափումների, վայրէջքի տեղամասում մոլորակի մակերեսային շերտը բավականաչափ փխրուն է, և բնահողի խտությունը մեկ խորանարդ սանտիմետրում չի անցնում 1,5 գրամից։ Այդ ապարների բնույթը որոշելու նպատակով «Վեներա—8» կայանի վրա տեղադրված էր գամմա-սպեկտրաչափ, որի միջոցով որոշվեց մակերեսային շերտում ռադիոակտիվ տարրերի պարունակությունը՝ ըստ դրանց գամմա-ճառագայթման։ Նշենք, որ գամմա-ճառագայթումները չափվել են թե՛ իջեցվող ապարատի վայրէջքի ժամանակ և թե՛ մոլորակի մակերևույթի վրա։ Վայրէջքից հետո գրանցվեց գամմա-ճառագայթման ընդհանուր ինտենսիվության աճ, որը պայմանավորված է մակերևութային շերտում պարունակվող բնական ռադիոակտիվ տարրերի քայքայմամբ։ Գամմա-ճառագայթման չափումները հնարավորություն ընձեռեցին քանակապես գնահատելու ուրանի, թորիումի և կալիումի պարունակությունը Վեներայի մակերեսային շերտում։

Ստացված տվյալների համաձայն, վայրէջքի շրջանում Վեներայի մակերեսային բնանյութը պարունակում է 4 տոկոս կալիում, 0,0002 տոկոս ուրան և 0,00065 տոկոս թորիում։ Ռադիոակտիվ տարրերի այդպիսի պարունակությունը և դրանց հարաբերակցությունը մեծ չափով նման են Երկրի գրանիտային ապարների բաղադրությանը։

Վեներայի վերաբերյալ վերջին տարիներս ստացված կարևորագույն և հետաքրքրական նյութերից է ամերիկյան գիտնականների կազմած նրա նոր ռադիոլոկացիոն քարտեզը։ Այստեղ աչքի է զարնում խառնարանների առատությունը։ Դրանք առանձնապես մեծաքանակ են մոլորակի հասարակածային շրջանում, որտեղ 1.500 կմ տրամագիծ ունեցող մի տարածքում դրանց թիվն անցնում է մեկ ու կես տասնյակից։ Դրանցից ամենամեծի տրամագիծը հասնում է 160 կմ-ի, մյուսներինը չի անցնում 35 կմ-ից։ Հավանաբար այդ շրջանում ավելի փոքր չափերի խառնարաններն ավելի շատ են։ Հետաքրքրական է, որ Վեներայի խառնարանները շատ խոր չեն (ամենախորը 400 մ է)։ Այս երևույթի պատճառը դեռևս պարզաբանված չէ։ Գիտնականների ենթադրությամբ այդ խառնարաններն առաջացել են մետեորիտների ռմբակոծման հետևանքով դեռևս այն ժամանակ, երբ մոլորակը մթնոլորտ չի ունեցել։ Հետագայում այդ խառնարանները լցվել են հրաբուխների լավայով և մասամբ՝ հողմահարման նյութերով։ Պետք է ենթադրել, որ Վեներան ավելի հարթ մակերևույթ ունի, քան Երկիրն առանց ջրային թաղանթի։

ԱՅԺՄ, ԵՐԲ ՎԵՆԵՐԱ ՄՈԼՈՐԱԿԻ վերաբերյալ ստացված են բավականաչափ ստույգ տվյալներ, կարելի է մասնակիորեն պատասխանել ամենահետաքրքրական հարցին՝ կյանք կա՞ արդյոք Վեներայի վրա։ Հիմա արդեն գիտնականների ճնշող մեծամասնությունն այն միասնական կարծիքին է, որ Վեներայի մակերևույթի վրա կյանքի համար պայմաններն այնքան անբարենպաստ են, որ նրա առկայությունն այստեղ կարելի է ըն-



digitised by A.R.A.R.@

գտնել միայն սկզբունքորեն: Կյանքի համար շատ ավելի նպատակահարմար պայմաններ կան Վեներայի մթնոլորտի 50—60 կմ բարձրության շերտերում՝ ամպաշերտերի շրջանում: Այստեղ ջերմաստիճանը մոտ է Ցելսիուսի զրո աստիճանին, ճնշումը նման է երկրայինին... Հնարավոր է, որ այստեղ գոյություն ունենան որոշակի միկրոօրգանիզմներ կամ մանրէներ: Դրա հավանականությունը ես չափազանց աննշան է:

Վեներա մոլորակի վերջին տարիների հետազոտությունները պատասխանեցին շատ չպարզաբանված հարցերի, բայց Վեներան չդադարեց «հանելուկների մոլորակ» լինելուց: Արծարծվեցին բազմաթիվ նոր հարցեր և ենթադրություններ այդ մոլորակի այսօրվա պայմանների ու զարգացման վերաբերյալ: Դրանցից մի քանիսին կծանոթացնենք ստորև:

Վեներայի մակերևը [illegible] մինչև Ցելսիուսի 500 աստիճան տաքացմ[illegible] նախընդունելի մեխանիզմն այսօր, այսպես կոչված՝ «ջերմոցային էֆեկտն» է, որի իմաստը հետևյալն է: Արեգակնային ճառագայթներն անցնում են, թեպետև շատ փոքր քանակությամբ, ամպային ու մթնոլորտային հզոր շերտերի միջով և տաքացնում մոլորակի մակերևույթը: Մոլորակի սեփական ճառագայթարձակումը կատարվում է ավելի երկար, ինֆրակարմիր ալիքների տիրույթում, որը կլանվում է հզոր ածխաթթվային մթնոլորտի կողմից: Փաստորեն մոլորակն ստանում է ջերմություն, որը նրա մթնոլորտը (ջերմոցի ապակու նման) հնարավորություն չի տալիս ճառագայթելու տիեզերական տարածություն:

Վեներայի մթնոլորտում (պարզ է, որ նրա մակերևույթին հեղուկ ջրի առկայությունը բացառված է) ջրի քանակն առնվազն հազար անգամ ավելի քիչ է, քան Երկրի վրա: Դրա պատճառը, ըստ ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր Մ. Յա. Մարովի, Վեներայի վերին մթնոլորտում ջրային գոլորշիների ավելի ինտենսիվ քայքայումն է ջրածնի և թթվածնի: Ջրածինը հեռանում է դեպի տիեզերական տարածություն, իսկ թթվածինը կապվում է մակերևութային ատարրների հետ:

Վերջնական պարզաբանման են սպասում Վեներայի ամպաշերտի (կամ ամպաշերտերի), նրա մթնոլորտի ընդհանուր շրջանառության, մակերևույթի կազմության ու ռելիեֆի, մագնիսական դաշտի բացակայության, մոլորակի հակառակ պտույտի, այդ մոլորակի վրա կյանքի առկայության հետ կապված և բազմաթիվ այլ հարցեր: Դրանց պատասխանը կտան երկնակամարի գեղեցկագույն լուսատուի՝ Վեներայի հետագա հետազոտությունները:

**Գ. Ս. ԻՎԱՆՅԱՆ**
Լենինգրադի պետական համալսարանի դասախոս


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Մ. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):



**Адрес редакции: 375033. Ереван-33, Барекамутян 59 г.**

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 08419 Պատվեր 1442 Թղթի չափսը 70×108 $^{1}/_{16}$: Տիրաժ՝ 13.800 Գինը՝ 20 կ.:*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 11/VII 1975*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խաանկյան փող. № 28:*







# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԿԼԱՐԱ ՑԵՏԿԻՆ— Լենինի պատգամները ողջ աշխարհի կանանց: *Մ.*, «Политиздат», *1975:*

Սովետական հայրենիքի պաշտպանության գլխավորողը: *Ակնարկներ Հայրենական մեծ պատերազմի տարիներին ՍՄԿԿ-ի գործունեության մասին: Մ.*, «Политиздат», *1975:*

Պ. ՄԱՇԵՐՈՎ— Մեծ գործունություն գաղափարա—քաղաքական աշխատանքին: *Մ.*, «Политиздат», *1975:*

Վ. Գ. ԱՖԱՆԱՍԵՎ— Սոցիալական ինֆորմացիան և հասարակության կառավարումը: *Մ.*, «Политиздат», *1975:*

Մ. ԽՈԻՆԴ— Ինչպես է երևան եկել «Մանիֆեստը»: *Մ.*, «Политиздат», *1975:*

Ա. ՅԱ. ԲՈՐԻՆ— Ես պատասխանում եմ: *Մ.*, «Политиздат», *1975:*

*Հրապարակախոսական ակնարկներ կոմունիստական բարոյականության մասին:*

Ա. Վ. ԱՆԻԿԻՆ— Գիտության պատանեկությունը: *Մինչմարքսյան էկոնոմիստ-մտածողների կյանքը և գաղափարները: Մ.*, «Политиздат», *1975.*

Ե. ԲՈԳԱՏ— Զգայությունները և իրերը: *Մ.*, «Политиздат», *1975:*

Վտանգավոր կուրս: *Հակասովետիզմը և շովինիզմը Պեկինի քաղաքականության հիմքն է: Մ.*, «Политиздат», *1975:*

*Վ. Ա. ԱՆՖԻԼՈՎ—* «Կայծակնային պատերազմի» փլուզումը: *Մ.*, «Знание» *հրատ., 1975:*

*Հայրենական մեծ պատերազմում (1941—1945 թթ.) սովետական ժողովրդի հաղթանակի 30-ամյակի առթիվ:*

Ի. Կ. ԿՈԲԼՅԱԿՈՎ— ՍՍՀՄ-ի պայքարը հանուն խաղաղության և կոլեկտիվ անվտանգության (1938—1941 թթ.): *Մ.*, «Знание» *հրատ., 1975:*

Ս. Մ. ԿՈՎԱՐՅՈՎ— Կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը կուսակցության գաղափարա-դաստիարակչական աշխատանքի կենտրոնական խնդիրն է: *Մ.*, «Знание» *հրատ., 1975:*

Վ. Ա. ԿՈՒԼԻՉԵՆԿՈ— Քննադատությունը և ինքնաքննադատությունը ՍՄԿԿ գործունեության մեջ: *Մ.*, «Знание» *հրատ., 1975:*

Ա. Ս. ՆԵԳՐՈՒ-ՎՈԴԷ— Ագրարային-արդյունաբերական կոոպերացումը ՍՍՀՄ-ում: *Մ.*, «Экономика» *հրատ., 1975:*

Տնտեսավարման մեխանիզմի կատարելագործումը զարգացած սոցիալիզմի պայմաններում: *Մ.*, «Экономика» *հրատ., 1975:*

Գ. Ի. ՄՈՒՍԵՆԿՈ, Վ. Ի. ՊԵՏՐՈՎԱ— Տնտեսական ինֆորմացիայի կոմպլեքսային մշակման համակարգը ԳԴՀ-ում: *Մ.*, «Экономика» *հրատ., 1975:*

Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Հայաստանի կոմկուսի գործունեությունը բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ»: *Ե.*, *«Համալսարան» հրատ., 1975:*

Սովետական Հայաստանը Հայրենական մեծ պատերազմի տարիներին (1941—1945): *Փաստաթղթերի և նյութերի ժողովածու (ռուսերեն): Ե., ԳԱ հրատ., 1975:*

Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, Հ. ՍԱՐԳՍՅԱՆ— Սիրիան անկախության համար մղված պայքարում: *(1917—1946 թթ.): Ե., ԳԱ հրատ., 1975:*

ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆ— Երկերի լիակատար ժողովածու. *հինգ հատորով: Հ. 1, «Հայաստան» հրատ., 1975:*

Վ. ՍԵՎՅԱՆ— Հայ երիտասարդական մամուլի պատմությունից: *«Հայաստան» հրատ., 1975:*

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ— Հայաստանը իմպերիալիստական Գերմանիայի քաղաքականության մեջ *(ռուսերեն): «Հայաստան» հրատ., 1975:*

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Տնտեսագիտական կրթությունը և արտադրության զարգացումը: *«Հայաստան» հրատ., 1975:*

Ա. ՀԱԿՈԲՅԱՆ— Հերոսական մարտերում: *«Հայաստան» հրատ., 1975:*

digitised by A.R.A.R.@

# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵ՛Ք

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏՆՏԵՍԱԿԱՆ–ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻՆ

*ԱՄՍԱԳԻՐԸ*

*հրապարակում է հոդվածներ ՍՄԿԿ և ՀԿԿ պատմության, հեղափոխական շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ.*

*— լուսաբանում է հանրապետությունում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում նյութեր կուսակցական, կոմերիտական, արհմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին: Տպագրում կուսլուսցանցի ունկնդիրներին օգնող նյութեր.*

*— լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում կոնսուլտացիաներ, մամուլի տեսություններ, գրախոսություններ, պատասխանում ընթերցողների հարցերին.*

*— տպագրում է նյութեր եղբայրական սովետական հանրապետությունների, սոցիալիստական երկրների, միջազգային կոմունիստական շարժման մասին:*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

*Մեկ տարին— 2 ռ. 40 կ.*

*Վեց ամիսը— 1 ռ. 20 կ.*

*Երեք ամիսը— 60 կ.*

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝*

*կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով:*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*

digitised by